# ԱՐԱՐԱՏ

ԿՐՕՆԱԿԱՆ, ԲԱՐՈՅԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ,
ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ։

## ԱՄՍԱԳԻՐ

ԹԻՒ Ա. ՏԱՐԻ ԻԵ. ՅՈՒՆՈՒԱՐ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ ՏՊԱՐԱՆՈՒՄ
ՌՅԽԱ—1892

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՄՇԱԿ

ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՐԱԳԻՐ

(Տասն եւ իններորդ տարի)

*Հրատարակւում է նոյն գինով և նոյն ծրագրով: Տարեկան բաժանորդագինը* 10 *ր.*

*Հասցէն* Тифлисъ, Редакція газеты „Мшакъ."

*Արտասահմանից*—Redaction du journal „Mschak"

---

## ՀԱՅՐԵՆԻՔ

ՕՐԱԳԻՐ

*Ազգային, գրական և քաղաքական.*

*Խմբագրապետ Արփիար Արփիարեան*

*Տէր և տնօրէն՝ Յովհաննէս Շահնազար.*

*Խմբագրութիւնն է. Պօլիս, Բերա, մեծ փողոց, սիթէ տ'Ալէբ:*

Bureaux du Journal „Gaïrenik" Péra, Cité d'Alep Constantinolpe.

*Օտար երկրաց համար տարեկան* 300 *թուղ համար* 25 *ֆրանք:*

---

## „ԱՂԲԻՒՐ"

(*Ամսագիր*)

ԵՒ

## „ՏԱՐԱԶ"

(*Շաբաթաթերթ*)

*Հրատարակւում են նոյն գինով և նոյն ծրագրով: Աղբիւրի տարեկան բաժանորդագինն է երեք ռուբ. և* 28 *կ. պրեմիաների ճանապարհածախսի համար:*

*Իսկ «Տարազի» բաժանորդագինը* 6 *ռուբլի է.*

*Խմբ. Հրատ. Տ. Նազարեանց*

*Հասցէն* Тифлисъ, Редакція „А[redacted]азъ."

# ԱՐԱՐԱՏ

ԿՐՕՆԱԿԱՆ՝ ԲԱՐՈՅԱԿԱՆ՝ ՊԱՏՄԱԿԱՆ՝ ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ

## ԱՄՍԱԳԻՐ

---

**Թիւ Ա. Տարի ԻԵ. Յունուար.**

---

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՒՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ.
ՌՅԽ — 1892

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՄՇԱԿ

ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՐԱԳԻՐ

(Տասն եւ իններորդ տարի)

Հրատարակւում է նոյն գիրքով և նոյն ծրագրով: Տարեկան բաժանորդագինը 10 ր.

Հասցէն Тифлисъ, Редакція газеты „Мшакъ.“

Արտասահմանից—Rédaction du journal „Mschak“

---

## ՀԱՅՐԵՆԻՔ

ՕՐԱԳԻՐ

Ազգային, գրականական և քաղաքական.

Խմբագրապետ Արփիար Արփիարեան

Տէր և տնօրէն Յովհաննէս Շահնազար.

Խմբագրութիւն Կ. Պոլիս, Բերա, մեծ փողոց, սիթէ տ'Ալէբ:

Bureaux du Journal „Gaïrenik“ Péra, Cité d'Alep Constantinolpe.

Օտար երկրաց համար տարեկան 300 Թուր համար 25 ֆրանք:

---

## „ԱՂԲԻՒՐ“

(Ամսագիր)

ԵՒ

## „ՏԱՐԱԶ“

(Շաբաթաթերթ)

Հրատարակւում են նոյն գիրքով և նոյն ծրագրով: Աղբիւրի տարեկան բաժանորդագինն է երեք ռուբ. և 28 կ. պլիմիաների ճանապարածախսի համար:

Իսկ «Տարազի» բաժանորդագինը 6 ռուբլի է.

Խմբ. Հրատ. Տ. Նազարեանց

Հասցէն Тифлисъ, Редакція „А[illegible]азъ.“

# ԱՐԱՐԱՏ

ԿՐՕՆԱԿԱՆ, ԲԱՐՈՅԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ, ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ

## ԱՄՍԱԳԻՐ

---

**ԹԻՒ Ա. ՏԱՐԻ ԻԵ. ՅՈՒՆՈՒԱՐ.**

---


ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՒՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ.

ՌՅԽԱ — 1892

ՀՐԱՄԱՆԱՒ

# ԱՄԵՆ· Տ· ՏԵՂԱԿԱԼԻ

ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ։



# ԿՐՕՆԱԿԱՆ

## ԱՆԱՆԻԱ ՆԱՐԵԿԱՑԻ

### (Ժ-րդ ԴԱՐ)։

Մեր ազգային պատմութեան նշանաւոր շրջաններից մէկն է Թոնդրակեցի կոչուած աղանդաւորների շարժման շրջանը՝ իններորդ դարի առաջին կիսից մինչև տասն և մէկերորդ դարի երկրորդ կէսը, երկու ամբողջ դարից աւելի։ Արևելքում ծագած աղանդների մէջ մասնաւոր ուշադրութեան արժանի են Պաւլիկեանների 1) և սրանց յաջորդող Թոնդրակեցիների (նաև՝ Թուլայլեցի) աղանդները, երկուսն էլ ծագած և սնած բուն Հայ-

1) Պաւլիկեանների աղանդը գոյութիւն ունէր դեռ ևս Է-դ դարում։ Ը-դ դարում տէր Յովհան Օձնեցու ճառը ընդդէմ Պաւլիկեանց և կանոնները։

կական հողի վրայ։ Ուշադրութեան արժանի է, որ հայկական մտքի որ և է արտադրութիւն երբէք չունեցաւ քիչ թէ շատ զգալի ազդեցութիւն հայ նեղ ազգային սահմաններից դուրս, այդ սահմանների մէջ հաշուելով Անդրկովկասը՝ Վրաստանն ու Աղուանքը, ուրիշ մի քանի մանր դրացի ցեղերի հետ։ Մինչդեռ միակ բացառութիւնը այս կանոնից, հայկական մտածողութեան միակ արտադրութիւնը՝ թէպէտ աղանդաւոր և հակաուղղափառական մտածողութիւն, որը դուրս եկաւ Հայաստանի սահմաններից, տարածուելով հեռուն՝ Փոքր-Ասիա, Միջագետք, Բալկանեան թերակղզին, մանաւորապէս Բուլղարիա, Միջին Եւրոպա, Հիւսիսային Իտալիա և Հարաւային Ֆրանսիա, այդ միակ հայկականը, որ դարձաւ միջազգային և ահագին նշանակութիւն ստացաւ մարդկային ընդհանուր պատմութեան մէջ, այդ Թոնդրակեցիների աղանդն էր։

Մեր ազգային պատմութեան դասագրքերում այդ մասին գրեթէ ոչինչ չէ ասւում, իբրև թէ ոչինչ էլ եղած չը լինէր։ Մինչդեռ առնուազն երկու դար շարունակ, եթէ ոչ աւելի, ամբողջ հայ ժողովուրդը բաժանուած էր երկու բանակի. Մտքերը վրդովուած էին, մի կողմից ներելի և աններելի միջոցներով պաշտպանւում էր ուղղափառութիւնը, ոչ միայն խօսքով, քարոզութեամբ, այլ և բանի ուժով, դահիճներով, կախաղանով, խարանով, հրով ու ջրով, միւս կողմից ամենայն յամառութեամբ, առաջին դարերի քրիստոնեաներին վայել անվեհերութեամբ, ամեն նեղութիւնների և հալածանքների յանձնառութեամբ քարոզւում և ծաւալւում էր աղանդաւոր վարդապետութիւնը։ Պօղ Այրարատից, Սմբատ, Սարգիս, Ղազար, Թորոս, Արքայ, Կիւրեղ, Յակոբոս եպիսկոպոս, Կունծիկ աբեղայ, Տիկին Հրանոյշ, Իշխան Վրվեռ, Տիկնայք Աննի և Կամարայ, մի ոմն առասպելախառն Տիկին Մարէ, մի ուրիշը՝ Տիկին Ըեթի 1) և ուրիշ բազմաթիւ անուններ, մնացել են մեզ իբրև այդ աղանդի նշանաւոր գործիչների անուններ։

Չը նայելով Մագիստրոսի փքուցուռոյ խօսքերին և ամարդի հալածանքներին, մենք կարծում ենք, որ ոչ թէ հալածանքները վերջ դրին այդ աղանդին Հայաստանում,—ինչպէս յայտնի է այդ աղանդը շարունակեց իւր գոյութիւնը մինչև մեր օրերը Խնուսում և Ալեքսանդրապոլի գաւառում,—այլ Թուրք—Թաթարական արշաւանքները ծածկեցին իրենց հեղեղի տակ, ինչպէս ամեն բան, նաև այդ աղանդը, որի հետևողների մեծ մասը իրենց պաշտպան իշխանների հետ տեղափոխուեցին դէպի արևմուտք, Ասորիք, Փոքր-Ասիա և մանաւորապէս Բուլղարիա։ Բուլղարիան դարձաւ

1) Այս երկու վերջին անունները հանած ենք մի ձեռագրից, որը շուտով կը հրատարակենք։

այդ աղանդի երկրորդ հայրենիքը, ուր և Բոգոմիլ քահանայի անունով աղանդը կոչուեց Բոգոմիլների աղանդ։

Միջին Եւրոպայում՝ Կաթարացիները շարունակեցին նոյն աղանդը, իսկ հարաւային Ֆրանսիայում՝ Ալբիգացիները (ալբիժուաները)։ Այս վերջինների պատմութիւնը հանրածանօթ է և բոլորից լաւ ուսումնասիրուած1)։

Այսպիսով Ռեֆորմացիայի և բոլոր բողոքական—աւետարանական եկեղեցիների բուն նախահայրերը և հիմնադիրները դուրս եկան Հայաստանից։ Դրանց պատմութեան ուսումնասիրութիւնը անաչառութեամբ և առանց մոլեռանդութեան անհրաժեշտ է ոչ միայն մեր ուղղափառ Հայկական առ. եկեղեցու պատմութեան իբրև լրացուցիչ մասն, այլ աւելի ես իբրև հայ հոգևոր—մտաւոր կեանքի ինքնուրոյն արտայայտութիւն, մեծ և նշանաւոր իւր հետևանքներով։

Այստեղ մեր նպատակը չէ այդ նշանաւոր աղանդի վրայ նոյն իսկ հարևանցի ակնարկ ձգելը։ Այս մի քանի խօսքը անհրաժեշտ էր առաջիկայ մեր հրատարակած Անանիա Նարեկացու «խոստովանութեան գրի» նշանակութիւնը ըմբռնել տալու համար մեր ընթերցողների մեծամասնութեանը։ Մագիստրոսի, Լաստիվերտցու, Շնորհալու և ուրիշ գրողների մի․ քանի հարևանցի ակնարկներից և ընդհանուր ասացուածներից դուրս մենք ոչինչ չունէինք այս նշանաւոր աղանդի վերաբերութեամբ։ «Բանալի ճշմարտութեանը» և Սինօդի 1837 թուի № 38 գործը ամենաթանկագին տեղեկութիւններն են պարունակում այս աղանդին վերաբերեալ, որից և մասամբ օգտուեց պ. Երիցեանը Փորձում2)։ Մեզ պակասում էր Անանիա Նարեկացու գլուխ—գործոց համարուած ընդդէմ Թոնդրակիցեների գրած թուղթը, յիշուած գրեթէ հետագայ բոլոր գրողներից։ Ահա այդ թուղթն է, որ այժմս առաջին անգամ հրատարակում ենք։ Արդարացնո՞ւմ է արդեօք այդ գրուածքը այն բոլորը, ինչ յուսացւում էր դրանից։—Պէտք է խոստովանել որ ո՛չ։ Գիտէինք որ Անանիա Կաթուղիկոսի հրամանով Անա-

---

1) Ալբիգացիները ամբոխից կոչւում էին Bougre, որ Բուլղա՛ր բառի աղճատուածն է և գործ էր ածւում հերետիկոսի նշանակութեամբ, այժմս էլ այդ բառը պահուած է ֆրանսերէն լեզւում՝ և խիստ յիշոց է և տգեղ անարգական խօսք։ Բոլորովին անհիմն է Եւրոպացի մի քանի գրողների կարծիքը, ի թիւս որոց և Լաւըլէյինը, որոնք կարծում են թէ ալբիգացիները տարածեցին իրենց աղանդը Բուլղարիայում և Բոսնիայում, մինչդեռ շարժմունքը եղել է բոլորովին հակառակ ուղղութեամբ՝ արևելքից դէպի արևմուտք։ Թերևս մեզ յաջողուի երբ և իցէ այս նշանաւոր աղանդի ծագման և ծաւալման մասին գրել մանրամասն ուսումնասիրութիւն։

2) Տե՛ս «Փորձ» 1880 թ. № X եր. 91—130։ Տե՛ս նաև Չամչեան Պատմ. Հայոց Բ. հատոր, եր. 884—895։

կական հողի վրայ։ Ուշադրութեան արժանի է, որ հայկական մտքի որ և է արտադրութիւն երբեք չունեցաւ քիչ թէ շատ զգալի ազդեցութիւն հայ նեղ ազգային սահմաններից դուրս, այդ սահմանների մէջ հաշուելով Անդրկովկասը՝ Պարսաստանն ու Ազուանքը, ուրիշ մի քանի մանր դրացի ցեղերի հետ։ Մինչդեռ միակ բացառութիւնը այս կանոնից, հայկական մտածողութեան միակ արտադրութիւնը՝ թէպէտ աղանդաւոր և հակաուղղափառական մտածողութիւն, որը դուրս եկաւ Հայաստանի սահմաններից, տարածուելով հեռուն՝ Փոքր-Ասիա, Միջագետք, Բալկանեան թերակղզին, մասնաւորապէս Բուլղարիա, Միջին Եւրոպա, Հիւսիսային Իտալիա և հարաւային Ֆրանսիա, այդ միակ հայկականը, որ դարձաւ միջազգային և ահագին նշանակութիւն ստացաւ մարդկային ընդհանուր պատմութեան մէջ, այդ Թոնդրակեցիների աղանդն էր։

Մեր ազգային պատմութեան դասագրքերում այդ մասին գրեթէ ոչինչ չէ ասւում, իբրև թէ ոչինչ էլ եղած չը լինէր։ Մինչդեռ առնուազն երկու դար շարունակ, եթէ ոչ աւելի, ամբողջ հայ ժողովուրդը բաժանուած էր երկու բանակի։ Մտքերը վրդովուած էին, մի կողմից ներելի և աններելի միջոցներով պաշտպանւում էր ուղղափառութիւնը, ոչ միայն խօսքով, քարոզութեամբ, այլ և բռնի ուժով, դահիճներով, կախաղանով, խարանով, հրով ու ջրով, միւս կողմից ամենայն յամառութեամբ, առաջին դարերի քրիստոնեաների վայել անվեհերութեամբ, ամեն նեղութիւնների և հալածանքների յանձնառութեամբ քարոզւում և ծաւալւում էր աղանդաւոր վարդապետութիւնը։ Պօղ Այրարատից, Սմբատ, Սարգիս, Ղազար, Թորոս, Արքայ, Կիւրեղ, Յակոբոս եպիսկոպոս, Կունծիկ աբեղայ, Տիկին Հրանոյշ, Իշխան Վրվեռ, Տիկնայք Ախնի և Կամարայ, մի ոմն առասպելախառն Տիկին Մարէ, մի ուրիշը՝ Տիկին Շեթի[1]) և ուրիշ բազմաթիւ անուններ, մնացել են մեզ իբրև այդ աղանդի նշանաւոր գործիչների անուններ։

Չը նայելով Մագիստրոսի փքուցուռոյց խօսքերին և տմարդի հալածանքներին, մենք կարծում ենք, որ ոչ թէ հալածանքները վերջ դրին այդ աղանդին Հայաստանում,—ինչպէս յայտնի է այդ աղանդը շարունակեց իւր գոյութիւնը մինչև մեր օրերը Խնուսում և Ալեքսանդրապոլի գաւառում,—այլ Թուրք—Թաթարական արշաւանքները ծածկեցին իրենց հեղեղի տակ, ինչպէս ամեն բան, նաև այդ աղանդը, որի հետևողների մեծ մասը իրենց պաշտպան իշխանների հետ տեղափոխուեցին դէպի արևմուտք, Ասորիք, Փոքր-Ասիա և մասնաւորապէս Բուլղարիա։ Բուլղարիան դարձաւ

1) Այս երկու վերջին անունները հանած ենք մի ձեռագրից, որը շուտով կը հրատարակենք։

*այդ աղանդի երկրորդ հայրենիքը, ուր և Բոգոմիլ քահանայի անունով աղանդը կոչուեց Բոգոմիլների աղանդ։*

*Միջին Եւրոպայում՝ Կաթարացիները շարունակեցին նոյն աղանդը, իսկ հարաւային Ֆրանսիայում՝ Ալբիգացիները (ալբիժուաները)։ Այս վերջինների պատմութիւնը հանրածանօթ է և բոլորից լաւ ուսումնասիրուածը 1)։*

*Այսպիսով Ռեֆորմացիայի և բոլոր բողոքական—աւետարանական եկեղեցիների բուն նախահայրերը և հիմնադիրները դուրս եկան Հայաստանից։ Դրանց պատմութեան ուսումնասիրութիւնը անաչառութեամբ և առանց մոլեռանդութեան անհրաժեշտ է ոչ միայն մեր ուղղափառ Հայկական ս. եկեղեցու պատմութեան իբրև լրացուցիչ մասն, այլ աւելի ևս իբրև հայ հոգևոր—մտաւոր կեանքի ինքնուրոյն արտայայտութիւն, մեծ և նշանաւոր իւր հետևանքներով։*

*Այստեղ մեր նպատակը չէ այդ նշանաւոր աղանդի վրայ նոյն իսկ հարևանցի ակնարկ ձգելը։ Այս մի քանի խօսքը անհրաժեշտ էր առաջիկայ մեր հրատարակած Անանիա Նարեկացու «խոստովանութեան գրի» նշանակութիւնը ըմբռնել տալու համար մեր ընթերցողների մեծամասնութեանը։ Մագիստրոսի, Լաստիվերտցու, Շնորհալու և ուրիշ գրողների մի. քանի հարևանցի ակնարկներից և ընդհանուր ասացուածներից դուրս մենք ոչինչ չունէինք այս նշանաւոր աղանդի վերաբերութեամբ։ «Բանալի Ճշմարտութեանը» և Սինոդի* 1837 *թուի* № 38 *գործը ամենաթանկագին տեղեկութիւններն են պարունակում այս աղանդին վերաբերեալ, որից և մասամբ օգտուեց պ. Երիցեանը Փորձում 2)։ Մեզ պակասում էր Անանիա Նարեկացու գլուխ—գործոց համարուած ընդդէմ Թոնդրակեցների գրած թուղթը, յիշուած գրեթէ հետագայ բոլոր գրողներից։ Ահա այդ թուղթն է, որ այժմս առաջին անգամ հրատարակում ենք։ Արդարացնո՞ւմ է արդեօք այդ գրուածքը այն բոլորը, ինչ յուսացւում էր դրանից։—Պէտք է խոստովանել որ ո՛չ։ Գիտէինք որ Անանիա Կաթուղիկոսի հրամանով Անա-*

---

1) *Ալբիգացիները ամբոխից կոչւում էին* Bougre, *որ Բուլղա՛ր բառի աղճատուածն է և գործ էր ածւում հերետիկոսի նշանակութեամբ, այժմս էլ այդ բառը պահուած է ֆրանսերէն լեզւում՝ և խիստ յիշոց է և տգեղ անարգական խօսք։ Բոլորովին անհիմն է Եւրոպացի մի քանի գրողների կարծիքը, ի թիւս որոց և Լաւըլէյինը, որոնք կարծում են թէ ալբիգացիները տարածեցին իրենց աղանդը Բուլղարիայում և Բոսնիայում, մինչդեռ շարժմունքը եղել է բոլորովին հակառակ ուղղութեամբ՝ արևելքից դէպի արևմուտք։ Թերևս մեզ յաջողուի երբ և իցէ այս նշանաւոր աղանդի ծագման և ծաւալման մասին գրել մանրամասն ուսումնասիրութիւն։*

2) *Տե՛ս «Փորձ»* 1880 *թ.* № X *եր.* 91—130։ *Տե՛ս նաև Չամչեան Պատմ. Հայոց Բ. հատոր, եր.* 884—895։

կական հողի վրայ։ Ուշադրութեան արժանի է, որ հայկական մտքի որ և է արտադրութիւն երբէք չունեցաւ քիչ թէ շատ զգալի ազդեցութիւն հայ նեղ ազգային սահմաններից դուրս, այդ սահմանների մէջ հաշուելով Անդրկովկասը՝ Վրաստանն ու Աղուանքը, ուրիշ մի քանի մանր դրացի ցեղերի հետ։ Մինչդեռ միակ բացառութիւնը այս կանոնից, հայկական մտածողութեան միակ արտադրութիւնը՝ թէպէտ աղանդաւոր և հակաւեղղափոխական մտածողութիւն, որը դուրս եկաւ Հայաստանի սահմաններից, տարածուելով հեռուն՝ Փոքր-Ասիա, Միջագետք, Բալկանեան թերակղզին, մանաւորապէս Բուլղարիա, Միջին Եւրոպա, Հիւսիսային Իտալիա և Հարաւային Ֆրանսիա, այդ միակ հայկականը, որ դարձաւ միջազգային և ահագին նշանակութիւն ստացաւ մարդկային ընդհանուր պատմութեան մէջ, այդ Թոնդրակեցիների աղանդն էր։

Մեր ազգային պատմութեան դասագրքերում այդ մասին գրեթէ ոչինչ չէ ասւում, իբրև թէ ոչինչ էլ եղած չը լինէր։ Մինչդեռ առնուազն երկու դար շարունակ, եթէ ոչ աւելի, ամբողջ հայ ժողովուրդը բաժանուած էր երկու բանակի։ Մտքերը վրդովուած էին, մի կողմից ներելի և աններելի միջոցներով պաշտպանւում էր ուղղափառութիւնը, ոչ միայն խօսքով, քարոզութեամբ, այլ և բանի ուժով, դահիճներով, կախաղանով, խարանով, հրով ու ջրով, միւս կողմից ամենայն յամառութեամբ, առաջին դարերի քրիստոնեաներին վայել անվեհերութեամբ, ամեն նեղութիւնների և հալածանքների յանձնառութեամբ քարոզւում և ծաւալւում էր աղանդաւոր վարդապետութիւնը։ Պօղ Այրարատեց, Սմբատ, Սարգիս, Ղազար, Թորոս, Արքայ, Կիւրեղ, Յակոբոս եպիսկոպոս, Կունծիկ աբեղայ, Տիկին Հրանոյշ, Իշխան Վրվեռ, Տիկնայք Ախնի և Կամարայ, մի ոմն առաքելախառն Տիկին Մարէ, մի ուրիշը՝ Տիկին Շեթի[1]) և ուրիշ բազմաթիւ անուններ, մնացել են մեզ իբրև այդ աղանդի նշանաւոր գործիչների անուններ։

Չը նայելով Մագիստրոսի փքուցուածոյ խօսքերին և ամարդի հալածանքներին, մենք կարծում ենք, որ ոչ թէ հալածանքները վերջ դրին այդ աղանդին Հայաստանում,—ինչպէս յայտնի է այդ աղանդը շարունակեց իւր գոյութիւնը մինչև մեր օրերը Խնուսում և Ալեքսանդրապոլի գաւառում,—այլ Թուրք—Թաթարական արշաւանքները ծածկեցին իրենց հեղեղի տակ, ինչպէս ամեն բան, նաև այդ աղանդը, որի հետևողների մեծ մասը իրենց պաշտպան իշխանների հետ տեղափոխուեցին դէպի արևմուտք, Ասորիք, Փոքր-Ասիա և մանաւորապէս Բուլղարիա։ Բուլղարիան դարձաւ

---

1) Այս երկու վերջին անունները հանած ենք մի ձեռագրից, որը շուտով կը հրատարակենք։

այդ աղանդի երկրորդ հայրենիքը, ուր և Բոգոմիլ քահանայի անունով աղանդը կոչուեց Բոգոմիլների աղանդ։

Միջին Եւրոպայում՝ Կաթարացիները շարունակեցին նոյն աղանդը, իսկ հարաւային Գրանսիայում՝ Ալբիգացիները (ալբիժուաները)։ Այս վերջինների պատմութիւնը հանրածանօթ է և բոլորից լաւ ուսումնասիրուած1)։

Այսպիսով Ռեֆորմացիայի և բոլոր բողոքական—աւետարանական եկեղեցիների բուն նախահայրերը և հիմնադիրները դուրս եկան Հայաստանից։ Դրանց պատմութեան ուսումնասիրութիւնը անաչառութեամբ և առանց մոլեռանդութեան անհրաժեշտ է ոչ միայն մեր ուղղափառ Հայկական ս. եկեղեցու պատմութեան իբրև լրացուցիչ մաս, այլ աւելի ևս իբրև հայ հոգևոր—մտաւոր կեանքի ինքնուրոյն արտայայտութիւն, մեծ և նշանաւոր իւր հետևանքներով։

Այստեղ մեր նպատակը չէ այդ նշանաւոր աղանդի վրայ նոյն իսկ հարևանցի ակնարկ ձգելը։ Այս մի քանի խօսքը անհրաժեշտ էր առաջիկայ մեր հրատարակած Անանիա Նարեկացու «խոստովանութեան գրի» նշանակութիւնը ըմբռնել տալու համար մեր ընթերցողների մեծամասնութեանը։ Մագիստրոսի, Լաստիվերտցու, Շնորհալու և ուրիշ գրողների մի. քանի հարևանցի ակնարկներից և ընդհանուր ասացուածներից դուրս մենք ոչինչ չունէինք այս նշանաւոր աղանդի վերաբերութեամբ։ «Բանալի Ճշմարտութեանը» և Սինօդի 1837 թուի № 38 գործը ամենաթանկագին տեղեկութիւններն են պարունակում այս աղանդին վերաբերեալ, որից և մասամբ օգտուեց պ. Երիցեանը Փորձում 2)։ Մեզ պակասում էր Անանիա Նարեկացու գլուխ—գործոց համարուած ընդդէմ Թոնդրակեցեների գրած թուղթը, յիշուած գրեթէ հետագայ բոլոր գրողներից։ Ահա այդ թուղթն է, որ այժմս առաջին անգամ հրատարակում ենք։ Արդարացնո՞ւմ է արդեօք այդ գրուածքը այն բոլորը, ինչ յուսացւում էր դրանից։—Պէտք է խոստովանել որ ո՛չ։ Գիտէինք որ Անանիա Կաթուղիկոսի հրամանով Անա-

1) Ալբիգացիները ամբոխից կոչւում էին Bougre, որ Բուլղար բառի աղճատուածն է և գործ էր ածւում հերետիկոսի նշանակութեամբ, այժմս էլ այդ բառը պահուած է ֆրանսերէն լեզւում՝ և խիստ յիշոց է և ազեղ անարգական խօսք։ Բոլորովին անհիմն է Եւրոպացի մի քանի գրողների կարծիքը, ի թիւս որոց և Լաւըլէյինը, որոնք կարծում են թէ ալբիգացիները տարածեցին իրենց աղանդը Բուլղարիայում և Բոսնիայում, մինչդեռ շարժումնքը եղել է բոլորովին հակառակ ուղղութեամբ՝ արևելքից դէպի արևմուտք։ Թերևս մեզ յաջողուի երբ և իցէ այս նշանաւոր աղանդի ծագման և ծաւալման մասին գրել մանրամասն ուսումնասիրութիւն։

2) Տե՛ս «Փորձ» 1880 թ. № X եր. 91—130։ Տե՛ս նաև Չամչեան Պատմ. Հայոց Բ. հատոր, եր. 884—895։

նիա Նարեկացին գրել է Թոնդրակեցիների աղանդի մասին, սպասում էինք շատ տեղեկութիւններ, բայց դրանցից և ոչ մէկը չենք գտնում։ Բանից դուրս է գալիս, որ այդ թուղթը աւելի անձնապաշտպանութեան թուղթ է։ Դրա մէջ Անանիան անիծում է Թոնդրակեցիներին, որպէս զի ինքը Թոնդրակեցի չհամարուի, հարկ է դատում դնել իւր հաւատամքը, որպէս զի երևի իւր ուղղափառութիւնը։ Տարօրինակ և սրտաշարժ տեսարան։ Հայոց ամենամեծ վարդապետներից մէկը, Նարեկեան դպրոցի հիմնադիրը, յօր ծերութեան, հիւանդութեան անկողնում մեղադրւում է աղանդաւորութեան մէջ նոյն իսկ իւր ընկերակից կրօնաւորից, որի կեղտոտ անունը ջնջուել է պատմութեան էջերից և մեզ չէ հասել։ Անանիա Կաթուղիկոսի ժամանակները կրօնական յուզմունքը գագաթնակէտին էր հասել, ամբողջ գաւառներ և նահանգներ, ինչպէս Սիւնիքը, իրենց եպիսկոպոսներով անցնում էին հալածուած, խոշտանգուած աղանդաւորների կողմը։ Թագաւորում էր հալածանքն ու մոլեռանդութիւնը։ Քսուների և մատնիչների համար լաւ ասպարէզ էր բացուած։ Ամբաստանւում էին երբեմն ամենամաքուր և անմեղ անձնաւորութիւններ, որոնց միակ յանցանքը մոլեռանդութեան պակասութիւնն էր, և հալածանքներին չըհամակրելը։

Եւ ահա թէ ինչ դառն և արդարացի ցասմամբ լի խօսքերով է դառնում Անանիա Նարեկացին իւր անուանակից, ընկերակից, հայրենակից Անանիա Կաթուղիկոսին, որն իրենից ուղղափառ խոստովանութեան գիր էր պահանջում և անէծք Թոնդրակեցիներին։ Եւ իսկապէս այս առաջին անգամ լոյս տեսնող թղթի ամենանշանաւոր մասը այդ սրտաշարժ, զգացուած յառաջաբանն է և մասամբ էլ նոյն ոգւով գրուած վերջաբանը։ Այդ մի քանի տողերը ամբողջ դարի պատկերն են բաց անում մեր առաջ։

Մի քանի խօսք էլ այս գրուածքի հանգամանքների վերաբերութեամբ։ Մինչև օրս այս գրուածքը համարւում էր կորած, թէև գրուածքի վերնագիրը յայտնի էր և սխալմամբ վերագրւում էր Անանիա Շիրակացուն, որովհետև այս գրութեան հետ կից յիշւում էր և «Բացայայտութիւն թուոց» մի ուրիշ գրութիւն 1)։ Այդ գրութիւնը «Անանիայի հայոց վարդապետի սակս բացայայտութեան թուոց» վերնագրով կայ և մեր ձեռագրում և առանց որ և է կասկածի վերաբերում է Անանիա Նարեկացու

---

1) «Գրչագրաց ցուցակաց մէջ ուրիշ երկասիրութիւն մ'ալ կտեսնենք՝ Անանիայի անուամբ. «Անանիայի գիր խոստովանութեան յաղագս սուտ կարծեաց ի վերայ նորա, և բացայայտութիւն թուոց»։ Այս վերջին խօսքը հաւանական կերևցընէ մեզ Շիրակունւոյն ընծայել զայն, և ոչ ուրիշ նոյն անունը կրող վարդապետի մը»։ Հայկ. Հին Դպրութիւն, Զարբան. 1886 եր. 446.

գրչին։ Այստեղ տեղը չէ ապացոյցներ բերել մեր այս կարծիքին, սակայն այսչափին ասենք, որ այդ գրուածքը թուերի խ ո ր հ ր դ ա ւ ո ր նշանակութեանց բացատրութեանն է նուիրուած և Անանիայի աշակերտը Գրիգոր Նարեկացին շատ յաճախ գրուածքների մէջ խօսում է իւր վարդապետի հետևութեամբ թուերի խորհրդաւորութեան մասին։ Այս անտիպ գրուածքի սկզբնաւորութիւնն է. «Կամ եղէ ինձ սակաւ ինչ աշխատասիրել սակս թուոց բացայայտութեան ի բազմաց անտես եղեալ . . .» իսկ վերջաւորութիւնն է՝ «Եւ որպէս անցեալ ամն հնացեալ վախճան առնու, և վերջին օրն անցեալ ամին կատարումն և նորոյ ամին սկիզբն՝ ի միջոցի կալով ունի մասն ինչ ի հնոյն և հաղորդութիւն ունի ընդ նորոյն ամին՝ սկիզբն գոլով։» Այս գրուածքը կրկին անգամ ընդարձակ է Անանիայի «խոստովանութեան գրից»։

Մեր ձեռքում եղած ձեռագիրը թէև առանց համարի, կամ համարը եղծուած, անկասկած տպագրեալ Մայր ցուցակի № 499-է, Ջգօն գրքերից 3-ը։

Ձեռագիրը կաշեկազմ է, 25×19 հարիւրամետր, կոկած բամբակեայ թուղթ, բոլորագիր, մեծ մասամբ երկիւջեան, տեղ տեղ միապաղաղ տողերով, բովանդակութիւնը տե՛ս Մայր-ցուցակ, թերթ 527=1054 երես, գրութիւնը դիւրընթեռնելի և պարզ, լաւ պահուած, տողերի թիւը—30, էջերի մեծութիւնը 19×6 հ. մ. գրիչ՝ Ղազար քարտուղար, տեղի՝ Ագուլեաց Թովմայ Առաքելոյ վանք, թուական՝ ՌՃԻ. ըստ խնդրանաց Գրիգոր աբեղայի. (յիշատակարանը նօտր գիր և նոր գրութիւն)։

Ձեռագիրը նոյնութեամբ տպում ենք, օ և ո— խառն ուղղագրութիւնը միօրինակութեան համար ամեն տեղ վերածելով հնագոյն ձևին։ Ակներև աղճատուած բառերը ուղղում ենք բնագրում, սակայն գծի տակ դնելով ճշդութեամբ ձեռագրի ընթերցուածը։

ՄԻԱԲԱՆ.

# ԵՐԱՆԵԼՈՅ ՀԱՒՐ ԱՆԱՆԻԱՅԻ

# ԳԻՐ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ

## ՑԱՂԱԳՍ ՍՈՒՏ ԿԱՐԾԵԱՑՆ ՈՐ ՎԱՍՆ ՆՈՐԱ:

ՈՐՊԷՍ զի ծանիցի իմոց բանից ճշմարտութիւն որոց կամիցին ներհուն լինել լաւագոյն մտածութեամբ բովանդակ իմանալ զհաւատոյս հաւատոց իմոց՝ ահաւասիկ ածեմ բոլորից լսելեաց ի յայտ 1) ձեռնարկութեամբ իմով և գրով մատանց իմոց, մանաւանդ քեզ, իրաւդ անիրաւութեամբ և ծանաւթդ ոչ ծանաւթիս: Ընդդակիցդ աւտարացեալ, և ի ծննդենէ տէր գոլով մինչև ի ծերութիւն՝ ծառայի անտեղեակ բարուց և հաւատոց: Նախահարքք և գաւառաւ, և ազգաւ և ախորժակովք, և վարժիւք և կենակցութեամբ ի բնէ ի միասին կրաւնիւք միակամ վարելով առ Աստուած և առ մարդիկ, կատարեալ և անխէթ հաւատով և անխրթնի խորհրդականութեամբ, ի ժամ վախճանի իմոյ ուրախ լինել ի սէր հոգևոր սիրոյն Աստուծոյ: Նեղութիւն և անձկութիւն, հալածումն և աւտարութիւն, բարկութիւն ոչ իրաւացի, և սրտմտութիւն ոչ բանականաբար բաժին ինձ և վիճակ ի քէն սահմանեալ: Ո՛չ բարւոք ընտրեալ կայծակմամբ հրոյ այրել գյարդն, այլ խաւարելոյն և խարդաւանողին, բազմագլուխ վիշապին գոլով խորհրդակից, և ընդունակ խնդութեամբ բանսարկուբանից (կ)եղտաբնակ², մոլեգնի, տիրասպան քահանային, և եղբայրասպան կայենի, և մարդադէմ գազանին եղեր լսող, ախոր-

1) Ձեռագրում՝ ի յայս:

2) Զ. այս բառի առաջին տառը անվերծանելի: Թերևս՝ պեղտաբընակ:

ժելով զհիմն տարագրութիւն։ Հեշտալի քեզ եղեալ՝ արտաքրէն մտածութեամբ՝ զինչ են սակս Հաւատոյ բազմադիմի ջանիւք խոշտ-բագրութիւնքն մարդախոշոշ, չարաշշունջ, դրեմիտող 1), պիղծ բերանոյն։ Եւ արդ, ես ոչ եթէ լաւ ինչ եմ քան զայնոսիկ, որ յառաջագոյն ընկալան զայսպիսի բանս չարեաց ի չարացն խորհրդ-դոց, ըստ ժամանակին պատճառի ի վերայ ինքեանց հեղեալ, և համբերեցին գոհութեամբ և յանձն առին զարհամարհանս և զամենայն վիշտս, առ ոչինչ համարեալ որ ինչ ի վերայ երկրի փառք և մեծութիւն. այլ երկնաւորին ակն ունելով փառաց, աներևոյթ յուսով զկենաց անմահականից՝ ցանկային հասանել։ Եւ զի նախ յայտնապէս զաւասարոտեացն չար կարծիս հերքեալ մերժեցից յինէն, որք ոչ ըստ աստուածային գրութեանցն հետևեցին Հաւատոյ, այլ ըստ իւրեանց մտացն խորհրդոց, և անաստուած վարդապետութեան հետևեալ 2) ունայնավաստակ ջանիւ՝ արտաքս անկեալ եղեն և յուղիղ դաւանութենէ ճշմարիտ աստուածպաշտութեան, վասնորոյ և ի սուրբ առաքելոցն, և ի նոցին հետևողացն, և յերանելի հայրապետացն և սուրբ վարդապետացն՝ նզովիւք մերժեցան յեկեղեցւոյ Քրիստոսի, յիւրաքանչիւր ժամանակս ուղղափառացն՝ չարափառեստ հերձուածողքն։ Ուստի և ես, անարժանս և տրուպս, նուաստ ծառայս Աստուծոյ, նզովեմ զամենայն հերձուածոյսն, զառաջինս, և զմիջինս, և զվերջինս, զհամաձայնս միմեանց չարաչար վարդապետութեամբ, որք ի սկզբանէ մինչև ցայսաւր եղեն հակառակ Աստուծոյ, և վարդապետութեան սրբոց առաքելոցն, և քարոզութեան աւետարանչացն, և ամենայն սըրբոց Աստուծոյ, ողջամիտ և ուղղափառ վարդապետութեան։ Եւ արդ, յԱստուծոյ ամենակալէ, ի հաւրէ և յորդւոյ և ի սուրբ հոգւոյն, յարարչէն երկնից և երկրի, երևելեաց և աներևութից, և (յ)ամենայն գոյութեանց հրեշտակաց և մարդկան նզովեալ եղիցին ամենայն հերձուածողքն, որք առ նախահարցն ժամանակաւն եղեն, և որք առ մարգարէիւքն, յառաջ քան (զ)ծնունդն Քրիստո-

1) Ինձ անծանօթ բառ։

2) Ձ. հետևել։

*սի ի սուրբ կուսէն, և որք յաւուրս առաքելոցն, և որք ի ժամանակս սուրբ հայրապետացն, և որք մինչև ի մեզ երևեցան չարափառք, և որք ի մերում ժամանակիս, որք Թոնդրակեցիք կոչին, նզովեալ եղիցին յԱստուծոյ և (յ)ամենայն սրբոց Աստուծոյ։ (Յ)Ադամայ նախաստեղծէն Աստուծոյ մինչև ցԱբրահամ ի յերանելի նախահարցն նզովեալ եղիցին։ ՅԱբրահամայ մինչև ի Մովսէս նախամարգարէն՝ ի սուրբ հայրապետացն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Մովսէսէ մինչև ի Յովհաննէս Մկրտիչ՝ ի բոլոր [1]) մարգարէիցն և դատաւորացն, և թագաւորացն, և քահանայապետացն և ընտիր արդարոցն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Քրիստոսէ ընտրեալ (յ)աշակերտացն, յերկոտասանիցն և յեւթանասունն և երկուցն, և յամենայն առաքելական դասուցն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Յառաքելոցն հետևողացն, ի ճշմարիտ քարոզչացն և յուղիղ դաւանողացն սուրբ երրորդութեանն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Յակոբայ տեառնեղբօրէն, յառաջին եպիսկոպոսէն Երուսաղէմի, մինչև ի ժողովն Քաղկեդովնի, յամենասուրբ եպիսկոպոսացն Երուսաղէմի նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Յևոդիայ առաջին եպիսկոպոսէն Անտիոքայ և յԻգնատիոսէ երկրորդ եպիսկոպոսէ յետ առաքելոցն մինչև ի ժողովն Քաղկեդոնի նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Մարկոսէ աւետարանչէն և յԱնանիոսէ առաջին եպիսկոպոսէ Աղեքսանդրի յամենասուրբ եպիսկոպոսացն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Տիմոթէոսէ առաջին եպիսկոպոսէն Եփեսոսի մինչև ի ժողովն Քաղկեդովնի յամենասուրբ եպիսկոպոսացն Եփեսոսի նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Ստաքէոսէ առաջին եպիսկոպոսէն Բիւզանդիոյ [2]) մինչև ի շինելն կոստանդէանոսի զկոստանդինուպաւլիս յամենասուրբ եպիսկոպոսացն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Միտրոփանոսէ առաջին պատրիարգէն կոստանդինուպաւլսի մինչև ի ժողովն Քաղկեդովնի յամենասուրբ եպիսկոպոսացն նզովեալ եղիցին Թոնդրակեցիքն։ Ի Հայոց Լուսաւորչէն, ի սրբոյն Գրի-*

---

1) Զ. *Մկրտչի բոլոր։*

2) Զ. *Բիւզանդիոյ։*

գորէ առաջին քահանայապետէն հայոց մինչև ի մեզ յամենասուրբ կաթուղիկոսացն հայոց նզովեա՜լ եղիցին թոնդրակեցիքն։ Յեղիշայէ՝ առաջին եպիսկոպոսապետէն Աղուանից՝ մինչև ի մեզ յամենասուրբ եպիսկոպոսացն նզովեա՜լ եղիցին թոնդրակեցիքն։ Ի սուրբ և ի մեծ ժողովոյն Նիկիա(յ)ի, ՅԺԸ· եպիսկոպոսացն նզովեա՜լ եղիցին ընդ Արիոսի թոնդրակեցիքն, ամէն։ Ի կոստանդինուպօլսի սուրբ ժողովոյն, ի ՃԾ· եպիսկոպոսացն ընդ Մակեդոնի հոգեմարտին նզովեա՜լ եղիցին թոնդրակեցիքն։ Յեփեսոսի սուրբ ժողով (ոյն)· ԲՃ· եպիսկոպոսացն, ընդ Նեստորի չարափառի նզովեա՜լ եղիցին թոնդրակեցիքն։ Յամենայն ուղղափառ եպիսկոպոսաց, որ յամենայն ազգս եղեալ ընդ ամենայն աթոռս, նզովեա՜լ եղիցին թոնդրակեցիքն։ Որ ի սկզբանէ աշխարհի մինչև ի գալուստն Քրիստոսի սուրբք են լեալ, և որ լինելոց են, յամենայն ազգս, յամենեցունց նզովեա՜լ եղիցին թոնդրակեցիքն։

Եւ որ սուտ նզովէ զնոսա և կամ կեղծաւորութեամբ և կամ քողասուզեալ խորամանկութեամբ, կամ լոկ լեզուով բերանոյ և շրթամբ ձայնիւ և ոչ սրտիւ, և նա նզովեալ լիցի յամենեցուն վերոյգրեալ 1) սրբոցդ։ Եւ զի համառօտ ասացից, և ոչ բազմութեամբ անուանց հերձուածողացն դժուարալուր զբանս արարից լսողացդ, որպէս վերագոյն ասացի և դարձեալ ասեմ, որ ի սկզբանէ մինչև ի մերս ժամանակ երևեալ են հերետիկոսք՝ հակառակ ճշմարիտ հաւատոյ որ յաստուած, և ալւչութեան օրինաց, և հոգելից մարգարէիցն նախագիտութեան, և Քրիստոսի անօրէնութեան, անճառելի ծննդեանն ի սուրբ կուսէն Մարիամայ, և ամենայն կրիցն ըստ մարդկութեան, թլփատութեան և մկրտութեան, և սքանչելագործութեան, և վարդապետութեան չարչարանացն, և խաչելութեան, մահուանն և թաղման, և երեքօրեա(յ) յարութեանն, և համբարձմանն յերկինս, և միւս անգամ գալըստեանն, և յարութեան բոլոր սեռի մարդկութեանս, և արդար դատաստանին արդարոց և մեղաւորաց, և կենացն անվախճանիցն արդարոցն, և տանջանաց մեղաւորացն ո՜չ հաւատացին և այլա-

1) Զ· վր գրեալ։

Ձև խորհեցան Քրիստոսի և Նորին լուսաւոր վարդապետութեանն, և առաքելական սահմանադրութեան, և սուրբ երանելի վարդապետացն և հայրապետացն, և եպիսկոպոսացն Երուսաղէմի՝ Հռովմայ, և Աղէքսանդրի, և Անտիոքայ, և Եփեսոսի և Կոստանդինուպօլսի, և որ յամենայն քաղաքս և յամենայն գաւառս ընդ ամենայն տիեզերս եպիսկոպոսք սուրբք և վարդապետք ուղղափառք, այնպիսիքն որ սոցա դաւանութեան արտաքոյ խորհեցան բանիւ և գործով, բերանով և սրտիւ, Նզովեալ եղիցին. Նախ (ի) ճշմարիտ քահանայապետէն միածնի որդւոյն Աստուծոյ և ապա (յ)իւրոց օծելոցն զորոց քաղաքս վերոյգրեցաք [1]։ Եւ որ ոք հաղորդի չարափառայն անաստուած վարդապետութեան, առ ճշմարիտս ունելով զնոսա և զնոցին խոտորնակ բանս, ընդ նոսին Նզովեալ եղիցի յառաքելոյն և յամենայն սրբոցն։

Եւ որ յազգէ հայոց, հայկական բարբառով, որք և իցէ՝ հայրապետ կամ եպիսկոպոս, կամ քահանայ, կամ սարկաւագ, կամ կրաւնաւոր, կամ զինչ և իցէ մարդ ի վիճակէ սրբոյն Գրիգորի, և արտաքոյ Նորա վարդապետութեանն խորհիցի կամ ուսուսցէ՝ ի սուրբ Լուսաւորչէն և (յ)իւր զաւակացն՝ սրբոյն Արիստակիսէ, Վրթանիսէ, Յուսիկանն, Գրիգորիսէ, Ներսէսէ և սրբոյն Սահակայ յաւրհնութենէն հեռի եղիցի, և որոշեալ արտաքսեսցին ի փառացն արդարոց։

Եւ արդ, որովհետև զամպարշտացն և զթշնամեացն աստուծոյ, որ իսկզբանէ ի վերուստ մինչև ի կատարած հակառակք ճշմարտութեան երևեցան ոռութեամբ՝ քարկոծեցաք զնոսա բանիւն ճշմարտութեան Աստուծոյ, և զեկեղեցւոյ հիմանց հաստատուն և անշարժելի վէմն հաւատոյ բերաք ի ճակատ խոստովանութեամբ ամբիծ հաւատոց, որ ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին. զոչ ախորժողս ճշմարիտ դաւանութեան առաքելոցն և նոցին հետևողացն սրբազան հարց, և եպիսկոպոսացն, և վարդապետացն՝ նզովեցաք յամենայն զաւրութենէ որոյ յաւժարութեամբ. և ոչ կցորդ ուրուք եղաք բանի, և կամ հաղորդ պղծադաւան հերետիկոսացն, այլ

---

1) Զ. վր գրեցաք։

մեկնեալ ի նոցանէն մերձ գտաք սուրբ և ուղղափառ հաւատա-քիմ արանց աստուածայնոց, ընկալեալ զնոսա յաւրինակ և (յ) ա-ռաջնորդ, և պարիսպ ամուր, և յարկ հաստատահեղոյս, և ջահ հաւատոց, որով լուսաւորեալ զխաւարեալսն զհետ ոչ երթիցուք ճանապարհ: Այլ յամենայն խթոտ և գերբաւկ խորխորատից և տղմալի ջրհորոց գերիվերոյ դիւրին և հարթ ռահիւ, արքունա-կան պողոտային, ընթացեալ հասցուք ի յարկս վիմատաշ բարձ-րաձեղուն տաճարի, շրջապատեալ աշտարակաւք, բացեալ զդրունս ոսկիապատս մտցուք ի ներքս՝ խոստովանութեամբ և աւրհնու-թեամբ երկրպագցուք առաջի սեղան արարչին մերոյ. զի նա ինքն է տէր Աստուած մեր, մեք ժողովուրդք և խաշն արաւտի նորա:

Եւ արժանացեալ այսմ մտից արդարոց, ըստ նոսին վերաձայնեալ ասասցուք.

Հաւատամք ի մի Աստուած, ի Հայր ամենակալ, յարարաւղն երկնի և երկրի. և ի մի տէր Յիսուս Քրիստոս, որդին Աստուծոյ՝ ծնեալ և ոչ արարեալ, որով ամենայն եղև՝ երկինք և երկիր, երևելիք և աներևոյթք. և ի սուրբ Հոգին յանեղ և ի կատար-եալ և տէր կենդանարար, որ խաւսեցաւ յաւրէնս և ի մարգա-րէսն, զուգակից Հաւր և որդւոյ, արարիչ ամենայն արարածոց. որ երևին և որ ոչն երևին. յերրորդութիւն կատարեալ, երեք անձնաւորութեամբ, և մի աստուածութիւն՝ ի Հայր և յորդի և ի սուրբ Հոգին: Հայր անսկիզբն և անծին, որդի անսկզբնակից և ծնունդ Հաւր անճառելի, Հոգին սուրբ զուգակից որդւոյ, բղխումն ի Հաւրէ անպատմելի: Հայր՝ Աստուած ճշմարիտ, որդի՝ Աստուած ճշմարիտ, Հոգին սուրբ՝ Աստուած ճշմարիտ, երեք կատարեալ անձինք, մի կատարեալ աստուածութիւն, մի և երիս, երեք և մի: Մի տէրութիւն, մի իշխանութիւն, մի 1) թագաւո-րութիւն, մի 2) արարչութիւն, մի զաւրութիւն, մի բնութիւն, մի կամք, մի փառք Հաւր և որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Անբովան-դակելի, անճառելի, անպատմելի, անհասանելի, անտանելի, անի-

1. 2) Ձ. մին:

մանկալք, անսահմանելք, անպարագրելք՝ ի վերոյ ամենայնի, ի ներքոյ ամենայնի, արտաքոյ ամենայնի, ընդ ամենայն տեղիս՝ ի բարձրութիւնս, ի խորութիւնս, յերկայնութիւնս, ի լայնութիւնս: Զամենայն բաւանդակեալ ունի և ինքն յումեքէ ոչ բովանդակի, և լի են երկինք և երկիր փառօք նորա: Մի է աստուած հայր և որդի և հոգին սուրբ, յորմէ ամենայն և որով ամենայն և յորում ամենայն, արարիչ ամենայնի, երկնից և երկրի, հրեշտակաց և հրեշտակապետաց, զաւրութեանց, աթոռոց, տէրութեանց, պետութեանց, իշխանութեանց, սերովբէից և քերովբէից, Ադամայ նախաստեղծին և ամենայն մարդկութեանս և ամենայն արարածոց յոչընչէ գոյացուցիչ: Որ ասաց և եղեն, հրամայեաց և հաստատեցան, կարգեաց յաւիտեանս յաւիտենից [1]), սահման եդ ամենայնի և ոչ անցանեն: Աստուած նախահարցն և դարուն արդարոց առաջնորդ [2]), աստուած Աբրահամու և Իսահակայ և Յակոբայ և բոլոր դասու հայրապետացն: Աստուած Մովսէսի և Ահարոնի երևեալ, և առաքեալ յԵգիպտոս և փրկեալ զժողովուրդն (յ) Եգիպտացւոցն սքանչելագործ զաւրութեամբ և հարուածովք: Նոյն ևս տուող [3]) աւրինացն ի ձեռն Մովսէսի, նոյն ինքն և զաւրացուցիչ Յեսուայ, և ընտրող դատաւորացն, և առաքող մարգարէիցն, և կատարող քահանայիցն, և աւծող թագաւորացն, և բարեաց պարգևիչ ժողովրդեանն, և խրատիչ չարագործացն յիւրաքանչիւր ժամանակի: Նա ինքն աստուած մեր՝ հայր ամենակալ, ի վախճան ժամանակի առաքեաց զորդին իւր միածին աւետաւորութեամբ հրեշտակապետին Գաբրիէլի առ կոյսն Մարիամ: Որ ինքնածնեայ (յ)ղութեամբ բնակեցաւ յարգանդի և առեալ մարմին ճշմարտապէս՝ ծնաւ մարդ կատարեալ, անճառելի միաւորութեամբ, միած(ի)ն ի հաւրէ [4]), նոյն միածին և

---

1) Ձ. յաւտնս յւտնց:

2) Թերևս պէտք է ընթեռնուլ՝ առաջնոց:

3) Ձ. տվող:

4. Ձ. միածնի հաւրէ:

*ի մաւրէ, որդի աստուծոյ, նոյն և որդի մարդոյ։ Զաւրէնսն կատարեալ, որպէս տուող աւրինացն, ութաւրեա(յ) թլփատութեամբն և քառասնաւրեայ ընծայելով ի տաճարին՝ ի գիրկս ծերունւոյն Սիմէոնի գգուեալ տղայաբար և ի յերկինս Հաւր աթոռակից։ Զարգացեալ աճմամբ մարմնոյ մարդկայնէս, յղութեամբ աստուածութեանն՝ հաւասար Հաւր գոլով առանց պակասութեան։ Զամենայն կիրս մարդկային կենցաղոյս կրեաց բաց ի մեղաց։ Միաւորեալ ընդ մարմնոյն աստուածութեամբն՝ միով բնութեամբ մկրտեալ երեսնամեա(յ) ի Յորդանան ի Յովհաննէ. հայր ի վերուստ վկայեալ՝ դա է որդի իմ սիրելի, և հոգին սուրբ աղաւնակերպ իջեալ ի վերայ նորա, զմիակամութիւն ցուցանելով մարմնացելոյ որդւոյն հաւր զվկայութեան։ Եւ աստանաւր յայտնեցաւ երրորդութիւն աշխարհի, երից կատարեալ անձանց միութիւն, և տուաւ սահման մկրտութեան հաւատացելոց յանուն Հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, զերրորդութիւն դաւանելով և զմիութիւն խոստավանելով։ Յետ այսորիկ պահեաց քառասնաւրեայ և քաղցեաւ մարմնոյ կրիւք, յաղթեաց փորձողին աստուածութեան զաւրութեամբ, մի և նոյն գոլով աստուած և մարդ։ Աքանչելագործեաց միով ներգործութեամբ, զոր աւետարանիչքն պատմեցին, զամենայն ախտս և զհիւանդութիւնս բժշկելով. զոմանս բանիւ, զոմանս հզաւրութեամբ ձեռացն, որպէս՝ Քեզ ասեմ, արի և գնա, և կալեալ զձեռանէն յարոյց, և թողեալ լիցին քեզ մեղք քո, և ձեռն եղ և բժշկեաց։ Կաւ և թքով՝ զի յայտնի արասցէ զմիաւորութիւն աստուածութեան և մարմնոյն, և ցուցցէ զմարմինն իւր կարող գոլ կենդանացուցանել զաւրութեամբ աստուածութեան միացելով։ Որպէս արկեալ զմատունսն յականջսն և թքով անդր, և կալեալ զլեզուէն ձեռամբ հրամայէր՝ Բացի՛ր, և մերձեցեալ ի գագաղսն յարոյց զորդի այրւոյն։ Զայնիւ մեծաւ աղաղակեալ յարոյց զՂազար չորեքաւրեայ մեռեալ, և համբարձեալ զձեռս իւր աւրհնեաց զառաքեալսն և փչեաց ի նոսա և ասէ՝ Առէք հոգի սուրբ, և բանիւ ետ իշխանութիւն թողուլ զմեղս և ունել։ Տէր կենաց և մահու գոլով աստուածութեամբն, նոյն և մարմնովն անշփոթ միաւորութեամբն. մի որդի, մի բնութիւն, մի դէմք, մի*

կամք, մի ներգործութիւն, անճառ միաւորութեամբ, աստուածութեամբ և մարդկութեամբ։ Այսինքն՝ կամաւք իւրովք յանձն առ զարհամարհանս, զանարգանս, զբամբասանս ի հրէից անօրի· մատնեցաւ յաշակերտէն, ըմբռնեցաւ որպէս մարդ, կապեցաւ որպէս չարագործ, եկաց առաջի Պիղատոսի։ Դատապարտեցաւ որպէս մահապարտ, այպանեցաւ ի Հերովդէէ, փշովք պսակեցաւ ի զինուորաց, երկրպագեցաւ ի խաղարարողացն, որպէս անարժան գանեցաւ հարուածովք, բևեռեցաւ ի փայտի, խաչեցաւ ընդ աւազակս, մեռաւ որպէս մարդ, թաղեցաւ ի գերեզմանի մարմնով։ Զայս ամենայն կրեաց կամաւ հաւր և հաճութեամբ սուրբ հոգւոյն, անբաժանելի աստուածային բնութեամբն միացելով ընդ մարմնոյն։

Անարգեալ որպէս մարդ, նոյն ինքն փառաւորեալ ի հրեշտակաց՝ որպէս աստուած։ Արհամարհեալ որպէս մարդ, նոյն ինքն հաւր աթոռակից՝ որպէս աստուած։ Բամբասեալ որպէս որդի մարդոյ, նոյն ինքն հաւր փառակից՝ որպէս որդի Աստուծոյ։ Կապեալ որպէս մարդ մարմնով և ընդ հաւր բացարձակ բովանդակեալ ունի զամենայն որպէս աստուած։ Խաչեցաւ, բևեռեցաւ, մեռաւ որպէս մարդ, նոյն ինքն անմահ ի մեռելութեան մնաց որպէս աստուած։ Ոչ այլ ոք և այլ, այլ մի և նոյն աստուած և մարդ՝ անճառելի միաւորութեամբն կրեաց զայս ամենայն և կատարեաց 1) վասն փրկութեան մարդկան և սիրոյ։ Յարեաւ աստուածապէս ի մեռելոց մարմնովն, որով զմահ ճաշակեաց, և երևեցաւ աշակերտացն։ Զմարմին իւր եթող յաշխարհի և զարիւն իւր ետ մեզ դրաւական, խորհրդական հացիւն և բաժակաւն միշտ պատարագեալ մեզ ի կեանս և ի փրկութիւն, և ի թողութիւն մեղաց, և թոշակ կենացն անվախճանից։ Զմեզ ընդ ինքեան միացուցեալ մարմնովն, որ ի մէնջն էառ, յարուցեալ ի մեռելոց նովին մարմնովն հաւատարիմ եղև յաշխարհի, և վերացաւ փառաւք։ Համբարձաւ աւրհնութեամբ և նստաւ ընդ աջմէ հաւր ի բարձունս նովին մարմնով, վկայեալ ի հրեշտակաց և (յ)առաքելոցն որդի աստուծոյ, Յիսուս

1) Զ. կատարեալ.

Քրիստոս՝ տէր և աստուած, փառաւորեալ ընդ հաւր և սուրբ հոգւոյն— յաւիտեանս յաւիտենից ամէն։

Գայ միւս անգամ ի յերկնից, ի վախճանի աշխարհի ըստ իւրում ճշմարիտ և անսուտ խոստմանն և վկայութեան հրեշտակացն, որք ասացին առաքելոցն. Այս Յիսուս, որ վերացաւ յերկինս, այնպէս եկիցէ յերկնից. և առաքելոցն ճշմարիտ վարդապետութեան, և աւետարանչացն և ամենայն սրբոց, որք ակն արկին գալստեան նորա։ Եւ առնէ յարութիւն ամենայն մարդկութեանս, յԱդամայ մինչև յիւր գալուստն, արդարոց և մեղաւորաց. և արդար դատաստանաւ հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործս իւր՝ յաւիտենական զարդարոցն բարութիւնսն սահմանեալ, և անվախճան զմեղաւորացն տանջանսն։

Եւ այսմ հաւատոյ եմ որդի և ժառանգ, ի ծննդենէ մինչև ի ծերութիւն, և ի մահուանէ մինչև ի յարութիւն, յորում աւուր և դատաստանին և հատուցումն արդար կշռոյքն աստուծոյ բոլոր մարդկութեանս։ Եւ ես հաւատացեալ այսմ ամենայնի՝ խոստովանութեամբ սրբոյ երրորդութեանն և մի աստուածութեան, հաւր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, արարչին երկնից և երկրի, և որ ինչ յերկինս են, որ ինչ ի վերայ երկրի, երևելիք և աներևոյթք, և անսկիզբըն էութեան նոցա։ Այսինքն՝ մի աստուած հայր միածնի որդւոյ և պատճառ ելողութեան հոգւոյ սրբոյ, երրորդութիւն կատարեալ և մի աստուածութիւն, որպէս և ուսաք ի սուրբ գրոց, յաւետարանչացն, յառաքելոցն և ի սուրբ երանելի վարդապետացն։ Եւ յայսմ հիման հաւատոց հաստատեալ՝ երկիր պագանեմ աստուծոյ, և գոհանամ, և փառաւորեմ, և համբերեմ ամենայն վտանգից, որ ըստ մարմնոյ բնութեանց, որ ի ներքուստ և յարտաքուստ, որ յեղբարց և ի սուտ եղբարց, որ յազգէ և որ յաւտարաց։ Եթէ վասն իմ յանցանաց, գոհութիւն աստուծոյ, և եթէ յաստուծոյ փորձութիւն, առաւել գոհութիւն նմա։ Եւ եթէ անիրաւ պատահումն, և այսմ գոհութիւն աստուծոյ. որպէս Նաբաւթ մեռանի և Յովհաննէս գլխատի և Յոհան ե ք ս ա ւ ռ ի ս լինի, և այժմ ոչի՞նչ զարմանք։ Եւ եթէ միտակորոյս և անտեսից լուսոյ և նսեմացելոց անձանց գիւտ, և անհանճարից խորհրդոց յածումն, և ատեցո-

ղացն [1]) Նախանձ, և որովայնապաշտ փքացելոց ժայթքումն, և հեշտութեան [2]) պորտոյ ծառայի, և վրիպակ խաղացելոյ ըստ կամս քաղացի աղիճաց [3]). ոչ ախորժելով զազատաքարոյից տեսանել կանգուն զկենաց բարեյորդոր վայելչութիւն, զինքեանց վիճակի բաժին վերաձայնեն [4]) այնց, յորոց ակն ածեն սակս իւրեանց անմահ և ատելի աստուծոյ վարուցն համակելոց։

Որպէս և յոլովակի գտանել աւրինակս ի Նախնի ժամանակաց՝ զարդարոցն բազում ինչ ասել անիմաստոցացն [5]) զանուղայ բանս և գործս՝ ի յամբարիշտ բերանոց բղխեալ աղբերաբար զդառն ջուրց հոսանս, որով զբազմաց լսելիս առնեն առուս քարալից կառակոյտ, կուտակ զկուտակիւ արկեալ, բազում բուսոց և տնկոց և խոտոց բարեվայելուչ ջովացելոց առնեն կորուստ, վիմակոյտ և աւազակուռ ծածկութիւ։ Այսպէս և բանսարկուք (և) [6]) անփակ բերանովք առնեն վտարանդի զանձինս անմեղաց, յարձակմամբ յանդուգն և առանց բանի աստուծոյ բացմամբ բերանոյ՝ հոգէհալած և մահակորզ բարբառուք իւրեանց հեղեղեն։ Իսկ անմեղացն պատշաճ իւրեանց վարկեալ համբերեցին գոհութեամբ ասելով. Եղիցի անուն տեառն աւրհնեալ, և փառք աստուծոյ յաղագս ամենայնի։ Եւ պարտիմք գոհանալ զաստուծոյ յամենայնի, և ես յայսմ ասացից գոհութիւն աստուծոյ, զի բարի է յուսալ ի տէր յամենայն կեանս ի բարեկեցութեան և ի թշուառութեան, ի փարթամութեան և յաղքատութեան, ի բարձրութեան և ի նուաստութեան, յանդորրութեան և ի նեղութեան, ի փառաւորութեան և յանարգութեան, ի խնդութեան և ի տրտմութեան, ի հաշտութեան և ի

1) Չ. ատելողացն։

2) Թերևս պէտք է կարդալ՝ հեշտութիւն, կամ ենթադրել մի բառ պակաս։

3) Այս վերջին երկու բառը մենք դրինք անջատ հասկանալով այսպէս. աղիճ=պոռնիկ, քաղացի=Քաղա քաղաքացի։

4) Չ. վերաձայնէն։

5) Այսպէս ձեռագրում, երևի՝ անիմաստնոցն։

6) Այս և-ն աւելորդ ենք համարում։

խռովութեան, ի խաղաղութեան և ի հալածանս, ի սիրելութեան և յատելութեան, ի յղփութեան և ի տառապանս, ի բարեբանութեան և ի բամբասանս, ի գովութեան և ի պարսաւանս, ի պատիւ և յանպատուութեան, ի մեծութեան և ի նուաստութեան, ի վեհագոյն վայելուչս յարկս բնակութեան և յարտաքսել յանիրաւաց․ ի հայրենի ժառանգութեան յամենայնիւ [1]) գեղեցկապէտ յարմարեալ և ի տարագրութեան յամենայնէ զրկեալ և նուաղեալ, առանց յարկի և ծածկութի [2]), ի բոլոր պիտոյից սահմանեալ կենաց մարդկութեանս։ Ցայսմ ամենայնի պարտ է գոհանալ զաստուծոյ և ակն ունել բարի հատուցման ճշմարիտ հաւատացելոց յաստուած և անուանելոց քրիստոնեայս՝ ի ձեռն գոչման սուրբ հոգւոյն շնորհաց։ Վասն այսորիկ երանելիքն յիւրաքանչիւր ժամանակս ընկալան խընդութեամբ զ' ի վերայ [3]) եկեալ նեղութիւնս, բոլոր գունդք սրբոցն խսկզբանէ, և գոհութեամբ համբերեցին՝ դառն արկածիւք և դժընդակ կրիւք տանջեալ և չարչարեալ ի չարաբարոյ բնութիւնակցաց [4]), ելին յաշխարհէ աստի, այլում գաւառի և ժառանգութեան աներկբայ յուսով ակն կալեալ, այսինքն է՝ երկնից արքայութեան, յորում ծագեն արդարքն իբրև զարեգակն, տեսանելով զարեգակն արդարութեան Քրիստոս, ի նմանութիւն նորա նորոգեալ ժառանգաստուծոյ հաւր գոլով, պայծառացեալ ի հոգւոյն սրբոյ, յանսպառ և յանվախճան ուրախութիւնս յայսոսիկ։ Եւ վասն սորին կենաց ամենայն դառնութիւն նեղութեանցն քաղցր և հեշտալի թուէր հալածելոցն—Քրիստոսի աշակերտացն և նոցունց աշակերտելոցն, բոլոր դասու սրբոցն, որոց ոչ գոյր թիւ՝—յայնցանէ, որք համարէին զինքեանս իրաւս յանիրաւութեան, վասն որոյ և բարկութիւն աստուծոյ մնայ ի վերայ նոցա ի լսելն զբանն Քրիստոսի՝ Երթայք յինէն անիծեալք ի հուրն յաւիտենից։ Եւ այս է վիճակ ժառանգու-

1) Այսպէս բնագրում։

2) Զ. ծ ա ծ կ ո ւ թ ի ւ ն։ Մենք կարդացինք ծ ա ծ կ ո ւ թ ի, փոխանակ կարդալու ծ ա ծ կ ո ւ թ ի ւ ն։

3) Զ. զ ի վ ե ր ա յ։

4) Զ. Թերևս կարելի էր կարդալ և բնութենակցաց։

*թեան ամենայն անիրաւաց։ Եւ այն է բաժին բարի յայնմանէ, որ առնէ իրաւունս զրկելոց, յորմէ ոչ վերջասցի հետեւողն շաւղաց արդարութեան ո՛ ոք և իցէ և յորմէ իցէ ընթացողն և հակառակեալն։*

*Արդ զայսոցիկ սակաւ բանից յայտարարութիւն՝ ոչ եթէ վայրաբար և առանց խորհրդոյ, կամ վարկպարազի 1) մտածութեամբ, կամ մարդահաճոյ լինելով՝ արարի իմով ձեռամբ, քեզ, որ լսեսդ, այլ զի գիտասցես զինէն ստուգագոյն, վերծանելով զվերոյգրեալս, ընդունակ 2) գոլով բարեպաշտութեան ի ստորասութիւն, այսինքն՝ ճշմարիտ ի հաւատս Քրիստոսի աստուծոյ և ոչ ընդունող ոչ-խոստովանողացն զՔրիստոս և զիւր բարեգործութեան աւանդութիւնս։ Զբոլոր աւրինադրութեան ճշմարտութիւնն առանց ամենայն կարծեաց ընկալեալ և ընդունիմ՝ առաջի աստուծոյ և հրեշտակաց սըրբոց, ի բոլոր սահմանեալ ամբարշտացն դաւանութեանց հեռի գոլով, ըստ յառաջագոյն գրելոց վասն նոցա։ Եւ այժմ նոյն եղիցի վճիռ. եթէ հաւանեալ ոք և հաւատացեալ լինէն գրելոցդ, գոհութիւն աստուծոյ, և ես ասացից՝ Անիծեալ որ դնէ զյոյս իւր (ի) մարդ և ոչ ի տէր աստուած երկնի և երկրի, և անիծեա՜լ որ յուսա(յ) ի զաւրութիւն բազկի իւրոյ։*

*Կատարեցաւ ձեռնարկ հաւատաբանութեան ճշմարիտ և ուղղափառ խոստովանութեան երջանկին այնորիկ հաւր մերոյ Անանիայի։*

---

1) Զ. վարկ պարազ ի մտած....։

2) Զ. դունակ։

# ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ

---

## ՏՕՆ ՕՐԵՐԻՆ

### ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԴԱԴԱՐԵՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ. *)

---

Մեր այս վճիռը շատ առարկութիւնների կը հանդիպի և մեզ կրօնամոլութեան մէջ կը մեղադրեն. այսինքն կասեն, որ մենք ձգտում ենք հասարակական կեանքը կրօնի խիստ պահանջներին ենթարկել. սակայն մեզ համար ոչ մի մեղադրանք և առարկութիւն երկիւղալի չեն։

Ի հարկէ ամենից առաջ մեզ կասեն. «Այժմ առաջուայ ժամանակը չէ», որ չէ կարելի ներկայ կեանքի շարժումը դադարեցնել և մեր ծիսական կանոններով արուեստների և քաղաքակրթութեան զարգացման արգելք լինել և որ վերջապէս չէ կարելի ուրիշ քաղաքակրթուած ազգերի կեանքի կարգապահութիւնից շեղուել, որոնք մեզնից զանազան պահանջներ են անում և այլն։ Բայց իրենց քրիստոնեայ անուանող մարդոց յայտնի է, որ քրիստոնէութիւնը ոչ թէ մի դարի, այլ ամէն ժամանակների համար է նշանակուած և յատկապէս մարդկութիւնը ճշմարտութեան և արդարութեան ճանապարհից շեղուելուց ազատ պահելու և առաջնորդելու դէպի հոգեւոր և յաւիտենական կատարելութիւն և ոչ թէ միայն քաղաքակրթութեան ու լուսաւորութեան արտաքին յաջողութեան համար։ Այս մտքով և Պօղոս առաքեալը քրիստոնեաներին յորդորում է, որ իրենց համար օրինակ ու կատարելատիպ չհամարեն այս կամ այն դարի մարդոց կեանքը. այլ միշտ մտքով նորոգուին և աստուածային կամքին հետևելով իրենց կեանքի ճանապարհը լուսաւորեն (Հը-

---

*) Տե՛ս Արարատ 1891 Թ. Հոկտեմբեր։

ռոմ. գլ. ժբ. 2)։ Իսկ եթէ կամենում էք մեր նիւթապաշտ դարի ճշմարիտ հետեւող լինել, եկեղեցու օրէնքները վաճառականութեան պահանջների հետ յարմարացնելու մասին մի դատէք, այլ գնացէք Եւրոպայի գիտնականների այն ժողովները, որտեղ տօները բանող մարդոց հանգստութեան օրերն են համարւում և ուշադրութեամբ քննւում են՝ թէ որոշ օրերի մէջ բանւորը որքան ոյժ է ծախսում և այդ վերականգնելու համար որքան ժամանակ է հարկաւոր. հենց ճիշտ այնպէս՝ ինչպէս հոգատար կառավարը հաշւում է թէ աշխատանքից յետոյ՝ աշխատող ձիերին և եզներին, որքան հանգստութիւն պէտք է տալ։ Քրիստոնէական կրօնը մարդու համար միայն այս հանգիստը չէ պահանջում, այլ և պահանջում է մտքի և սրտի հանգստութիւն կենսական հոգսերից և աշխատութիւններից, — աստուածային վարդապետութեան, եկեղեցւոյ ու հաւատի բարերար ազդեցութեան շնորհիւ հոգւոյ ներքին կեանքը թարմացնել և վերջապէս՝ որ մարդը կազդուրուի, որպէս զի հրապոյրների և մեղքերի դէմ մեղանչելով՝ կարողանայ յաւիտենական կեանք ժառանգել։ Իսկ մարմնական ագահ շահերով առաջնորդւող քաղաքականութիւնը չի դադարիլ ճնշումն գործել մարդկային հոգու վերայ՝ մինչև որ Աստուծուն և յաւիտենական կեանքը մոռացնել տալով՝ չի հպատակեցնել նորան։ Մեր ազգի բարոյական յայտնի ախտն և որ մենք օտարների օրինակին հետեւելով և նոցա պահանջներին զիջանելով՝ մեր լաւ սովորութիւնները և բարոյական օրէնքները արհամարհում ենք. ուրիշների կարծիքից վախենալով՝ անտեղի յանդիմանութիւնների առաջ փոքրոգի ենք գտնւում, մինչև իսկ մեր ազգի անդամ լինելը ամօթ ենք համարում։ Ժամանակ է, որ մենք այդ թուլութիւնից ազատուենք և ինքնուրոյն՝ այսինքն քրիստոնեայ լինենք։— Մենք ճանաչում ենք մի այնպիսի քրիստոնեայ ժողովուրդ, որը արդի քաղաքականութեան մէջ զարգացած է և համաշխարհային վաճառականութիւն ունի, բայց տօներին պահպանում է իւր բարոյական հանգստութիւնը և ուրիշներին ստիպում է յարգել իւր օրէնքները և կեանքի կարգերը։ Մենք գիտենք, որ Մահմետականները իրենց տօները սուրբ են պահում։ Վերջապէս ի մեծ ամօթ մեր տեսնում ենք, որ հրէա-

ներն էլ իրենց շաբաթը սրբութեամբ են տօնում. և միայն մենք խնայում ենք եկեղեցական և տէրունական տօները նուիրել նորան, Ում որ հարկն է։

Բաւական է, որքան օտարների խօսքերը կրկնեցինք, թէ տօները ժողովրդին զրկում են աշխատանքից և դորանով վնասում են վաճառականութեանը և արուեստներին։ Այսպիսի կանխակալ կարծիքներ լսվում է տօներին վաճառականութիւնը դադարեցնելու մասին խօսելու ժամանակ։ Ի հարկէ այսպէս մտածում են միայն նիւթական շահերը աչքից չթողնողները և այն վախկոտ կարճամիտները, որոնք կարծում են թէ աստուածային կամքը ճշտութեամբ կատարելով՝ իրենց երկրային շահերին կը վնասեն։ Այդպիսիններին շատ յարմար է ասել Փրկչի այն խօսքերը, որ նա ասաց ալեկոծութիւնից ընկղմելու երկիւղի մէջ գտնուող աշակերտներին այն ժամանակ, երբ ինքը նոցա հետ նաւի մէջն էր. «Ո՞ւր են հաւատք ձեր» (Ղուկ. գլ. Ը. 25)։ Կիւրակէի հանգստեան մասին ընդ միշտ պատուէր տալով՝ միթէ Աստուած չնախատեսեց, որ մարդիկ ամբողջ օրեր կենսական աշխատութիւններից զրկուելով՝ կարող են երկիւղ կրել իրենց գործերի վնասուելուց։ Նա ոչ թէ խօսքով է մեզ համոզում, այլ գործով. փորձով հասկացնում է, որ իրեն ջերմեռանդութեամբ պաշտողները իւր օրհնութիւնը ամէն դէպքում կըստանան։ Իսկ գալով շաբաթ օրը սուրբ պահելու խնդրին՝ ի նկատի պէտք է ունենալ, որ հենց սկզբից Իսրայէլացիներին յայտնուած էր, որ շաբաթ օրը մանանայ չպէտք է իջնէր, ուստի և նորա նախընթաց օրը սովորականից երկու անգամ աւելի էր իջնում և շաբաթ օրը չէր փչանում, ինչպէս այդ սովորաբար լինում էր, եթէ մէկը լուր օրը կամենում էր յաջորդ օրուայ համար ևս հաւաքել (Ել. գլ. ԺԶ. 5. 20)։ Եօթներորդ տարուայ կամ շաբաթ օրուայ օրէնքի մէջ, (որով հրամայվում էր այդ տարի երկիրը չհերկել, չցանել և չմշակել այգիները), ասուած էր վեցերորդ տարին երկրի բոլոր բերքերը եռապատիկ հունձք կըտան, որ բաւական կըլինի ոչ միայն եօթներորդ այլ և ութերորդ տարուայ համար, երբ պէտք է մշակուի երկիրը, մինչև անգամ իններորդ տարուայ համար, երբ պէտք է

ութերորդ տարուայ ցանածը ժողովէին (Ղևտ. գլ. ԻԵ. 21. 22)։ Շաբաթ—տարուայ առաջ լինելիք այս եռապատիկ հունձքի խոստումը Աստուած միշտ կատարում էր, քանի որ Հրէաները ապրում էին Պաղեստինում։ Փրկիչը շաբաթուայ օրէնքից այս խոստումը չխլեց, ասաց. որ Մովսիսական օրէնքից չպէտք է անկատար մնայ «և յովտ մի, որ նշանախեց մի է» (Մատթ. գլ. Ե. 18)։ Այս բոլորը մոռանում ենք, երբ ագահութեամբ աշխարհային շահերի ետևից ենք ընկնում և երբ մոռանում ենք, որ իբր թէ Աստուծոյ չորրորդ պատուէրը ճշտութեամբ կատարելով պէտք է վնասուենք։ Այն ինչ ցաւօք սրտի շատ անգամ տեսնում ենք, ինչպէս գիւղացու աշխատանքները փչանում են և առատ բերքը ևս դաշտում փտում է անժամանակ եկած անձրևներից կամ արտերը չորանում են երաշտից։ Երբ որ առատ անձրև է գալիս, ասում ենք, մի քանի միլիոնների օգուտ կըստանանք, սակայն մոռանում ենք, որ բոլոր գործերի յաջողութիւնը կախումն ունի նորանից, Ով որ իւր արեգակը հաւասարապէս ծագում է բարիների և չարերի վերայ և անձրև է տալիս արդարներին և մեղաւորներին։ Անդադար գանգատներ ենք լսում. «հունձքը վատ է, վաճառականութիւնը լաւ չէ գնում, ժողովուրդը փող չունի». ի՞նչ է սորա պատճառը։ Միթէ՞ այն չէ, որ Աստծուն հաճելի չէ առատութիւն տալ այն մարդոց, որոնք յոյս են դնում միայն իրենց անդուլ աշխատանքի վերայ և մոռանում են տօներին աղօթել այն երկնաւոր հօրը, որի ողորմած աջը մի ակնթարթում փոխարինում է մեր վնասները և լրացնում է պակասները։ «Ո՞ւր են հաւատք ձեր։ — Ոչ ունիք, վասն զի ոչ խնդրէք» (Յակ. գլ. Դ.2)։

Վաճառականութիւնը տօներին դադարեցնելու մասին մտածողների շատերը ըստ երևոյթին դժուարանում են վճռել. ի՞նչ բան պէտք է թոյլատրել վաճառելու և ի՞նչ արգելել։ Ի՞նչպէս պէտք է անել, որ ժողովուրդը դժուարութեան մէջ չընկնի օրուայ հարկաւոր պիտոյքները գնելու և վաճառելու վերաբերմամբ։ Ի՞նչպէս պէտք է անել, երբ անակընկալ կերպով հիւր է գալի և նախընթաց երեկոյեան հարկաւոր պատրաստութիւնը չէ տեսնուած ևլն։ Այս բոլոր առարկութիւնների դէմ այն կասենք, որ եթէ աշխա-

տէք յիշել և թուել բոլոր ծայրայեղ դէպքերը ու հանգամանքները, այն ժամանակ ժողովրդին կդնէք այն դրութեան մէջ, որի մէջ գտնվում էին Հրէաները փարիսեցիների բառական հայեացքների և պահանջների շնորհիւ, որ մինչև այն աստիճան էր հասցրած, որ շաբաթ օրը մինչև անգամ արգելվում էր հիւանդներին օգնել (Ղուկ. գլ. ժԳ. 14)։ Տօների և եկեղեցական բոլոր օրէնսդրութիւնների մասին եղած քրիստոնէական վարդապետութեան նպատակը ոչ թէ այն է, որ նման պատուէրներով քրիստոնէական ազատ հոգին ճնշէ, այլ որպէս զի նոցա միջնորդութեամբ և հրահանգով բարեգործութեանց մէջ վարժելով՝ մարդոց մտքի մէջ քրիստոնէական լոյս ծագէ, իսկ սրտի մէջ — աստուածային երկիւղ, որոնց ներկայութիւնը մարդու մէջ հաստատում է նախ՝ քրիստոնէական իմաստութիւն ու զգօնութիւն և երկրորդ՝ բարին չարից և թոյլատրելին անթոյլատրելուց տարբերելու կարողութիւն (Եբր. գլ. Ե. 14)։ Քրիստոնէական այս իմաստութիւնը ժառանգում են թէ այն անհատները և թէ այն ազգերը, որոնց դաստիարակում է եկեղեցին, գիտակցական կերպով օրէնքներ կատարելը և պարտազանցութեան երկիւղը սովորցնելով։ — Սորանից կէս դար առաջ մենք ճանաչում էինք մի պանդոկապետ, որը՝ եկեղեցու զանգակի առաջին հարուածը լսելով՝ հիւրերին հրաւիրում էր դուրս գնալ և ապա՝ պանդոկը փակելով՝ իւր ընտանիքի հետ եկեղեցի էր գնում։ Ահա քրիստոնէական հայեացք, որը տօներին վաճառականութիւն անելու մասին մտածելիս միշտ աչքի առաջ պէտք է ունենալ։ Յայտնեցէք, որ դուք տիրող օրէնքներին սրբութեամբ էք վերաբերում, տօներին վաճառականութիւնը և առօրեայ ուրիշ աշխատութիւնները անթոյլատրելի էք համարում, ապա ժողովուրդը յանձնեցէք եկեղեցւոյ հովանաւորութեան և հաւատացած եղէք, որ քրիստոնէական խիղճը և հասարակաց բանականութիւնը կորոշեն թէ երբ և որպիսի ծայրայեղ կարիքների ժամանակ կարելի է բացառութիւններ անել։ Հին կտակարանի շաբաթուայ հանգստի մասին եղած բառական խստութիւնը ի նկատի ունենալով՝ Տէրն ինքը այդպիսի անհրաժեշտ բացառութիւնների մասին ակնարկեց ասելով՝ «իւրա-

քանչիւր ոք ի ձէնջ ի շաբաթու ո՞չ արձակէ զեզն իւր կամ զէշ ի մսրոյ և տանի տայ ջուր» (Ղուկ. գլ. ԺԳ. 15)։—Թէ աստուածային օրէնքները կատարելու ժամանակ որ աստիճան ազատութիւն է թոյլ տրվում, դորա համար Փրկիչը Դաւթի խրատական օրինակն է բերում, որը՝ Սաւուղից հալածուելու ժամանակ քաղցածանալով՝ «եմուտ ի տուն Աստուծոյ՝ և եկեր զհացն առաջաւորութեան. զոր ոչ էր օրէն նմա ուտել, և ոչ որոց ընդ նմայն էին, բայց միայն քահանայից» (Մատթ. գլ. ԺԲ. 4)։ Տէրը ասում է. «Շաբաթ վասն մարդոյ եղև, և ոչ եթէ մարդ վասն շաբաթու» (Մարկ. գլ. Բ. 27)։ Տօն օրերին վաճառականութիւն կամ ուրիշ առօրեայ գործ անելու ժամանակ ևս կարող են այդպիսի բացառութիւններ տեղի ունենալ քրիստոնէական խղճի առաջնորդութեամբ և առանց ընդհանուր օրէնքի ոյժը թուլացնելու։ Բայց որովհետև բոլորին մատչելի չէ այս բարոյական—ծիսական օրէնքը հասկանալը, որովհետև շատ մարդիկ օրէնքի միտքը ուղիղ չեն ըմբռնում և մաքուր խղճի տէր չեն. ուստի և մնում է առաքելոյ խրատին անսալ, որ վերաբերում է բոլոր բարի և իշխանութիւն ունեցող քրիստոնեաներին. «Մխիթարեցէք զկարճամիտս, պատսպարան լերուք տկարաց, երկայնամիտ լերուք առ ամենեսին»։ Երբ որ քաղաքական խորհուրդների և ժողովների մէջ հարցը այսպէս կը վճռուի այն ժամանակ միայն նոքա իրաւունք կունենան մեզանից—եկեղեցւոյ սպասաւորներից պահանջել, որ առանց ծուլանալու մեր պարտականութիւնը կատարենք, ժողովրդին դաստիարակենք, տաճարներում քարոզենք, արտաքոյ աստուածպաշտութեան զրուցատրութիւններով զբաղեցնենք և այլն։

Ըստ երևոյթին զարգացած, բայց քրիստոնէական համոզմունք չունեցող և իրենց ուրիշներին կառավարելու ընդունակ կարծող մարդիկ մի ուրիշ հարց էլ են առաջարկում. «Տօներին ժողովուրդը (ի հարկէ հասարակ դասակարգը) ի՞նչ պէտք է անէ, եթէ վաճառականութիւն անելը և աշխատելը նորան արգելուի»։ Մենք այդպիսիներին կըպատասխանենք, ժողովուրդն այն կանէ, ինչ որ դուք, որ նոցա գլուխն էք։ Եթէ դուք նախատօնակներին ջերմե-

ռանդութեամբ եկեղեցի կերթաք, տօն օրերը ամբողջ պատարագին ներկայ կգտնուէք և ժամասացութեան միջոցին չէք խօսիլ, ժողովուրդն էլ կուրախանայ և սովորութիւն կըդարձնէ տօներին ժամասացութեան ներկայ գտնուել։ Եթէ դուք, ինչպէս ձեզանից շատերն են անում, տօների նախընթաց օրերը և գիշերները խաղերի և խընճոյքների մէջ կանցկացնէք և շատ ուտելուց ու խըմելուց մինչև ճաշուայ պատարագի վերջանալը կըքնէք, այն ժամանակ ի հարկէ զարմանալի չէ, եթէ ձեր ազատութեամբ հրապուրուի և ժողովուրդը, ինչպէս որ այդ ցոյց է տալիս և իրականութիւնը։ Վերջապէս եթէ տօներին ժողովրդին ախորժելի և կրթիչ զբաղմունքներ տաք, օրինակ ճաշակն ազնուացնող երգեցողութիւն, խրատական—բարոյական գրքերի ընթերցանութիւն ևլն., ժողովուրդը սիրով կընդունէ, ինչպէս և դժբախտաբար կարող է հըրապուրուել ձեր թատրոններով, որոնք տարէցտարի ապականվում և կորցնում են իրենց գեղարուեստական արժանիքը։ Թերթեցէք պատմութիւնը, զօրութեամբ և կրթութեամբ պարծեցող մեծազգերի քայքայման և անկման պատճառը ո՞վ եղաւ։ Միթէ՞ առաջնակարգ դասակարգը չէր, որ առ ոչինչ էր համարում ժողովրդի ժամանակի ընթացքում սրբագործուած աւանդութիւնները, բարքն ու վարքը և բարի սովորութիւնները և սխալ ու մոլար վարդապետութիւններով հրապուրուելով ընկղմվում էր շռայլութեան ու մեղքերի մէջ։

Ասացինք, որ վաճառականութիւնը տօներին դադարեցնելու որոշման ժամանակ քաղաքական ժողովների տարածումները և կամայականութիւնները ճնշում են ժողովրդին և տանջում են նորա խիղճը։ Բարեպաշտ վաճառականները եկեղեցւոյ սպասաւորներին գանգատվում են, որ տօն օրերի որոշ ժամերին նշանակուած վաճառականութիւնը նոցա ճնշում է, որ նոքա ազատութիւն չունին ոչ ժամապաշտութեան ներկայ գտնուելու և ոչ իրենց ընտանիքի մէջ հանգստանալու։—Վերջապէս մենք տեսնում ենք, ինչպէս վաճառականներից մի քանիսը իրենց ազատ կամքով հետզհետէ սկսում են տօներին վաճառականութիւն չանել։ Այս երևոյթը ակնյայտնի կերպով տեղի ունեցաւ, երբ Ռուսաստանում

առաջին անգամ տօնվում էր Թագաւոր կայսեր հոկտեմբերի 17-ին վտանգից ազատուելու տարեդարձը։

Մարդ խղճահարվում է, տեսնելով քրիստոնեայ ժողովրդին անբնական դրութեան մէջ. որովհետև քրիստոնեայ ժողովուրդը զլանում է տօներին աստուածահաճոյ գործեր կատարել և իւր քրիստոնէական զգացմունքների հաւատարիմ թարգմանը լինել։—

Ո՜վ ճշմարիտ հաւատացեալներ, և ի՞նչ էք սպասում, ումնի՞ց էք վախենում։ Արդէն ձեզ յայտնի է տէրունական օրէնքը, որ սուրբ օրերը ձեր հոգին ազատում է կենսական ամեն տեսակ գործերից և աշխատանքներից։ Ուրեմն մնում է, որ Աստծուն նուիրուած սուրբ օրերին վերականգնուի խանգարուած կարգապահութիւնը և խաղաղութիւնը, որ ժողովրդի համար իսկապէս բարերար հետևանքներ կարող է ունենալ։ Ճշմարիտ է, երբ հասարակութեան մեծամասնութեան մէջ որև է վատ սովորութիւն արմատացել է, նորա դէմ մարտնչելը դժուար է. սակայն արդէն այս չարիքի դէմ կռուել սկսողներ կան և շատերն էլ ի սրտէ ցանկանում են նորան ոչնչացնել։ Ում հոգին որ աւելի է օժտուած աստուածային երկիւղով և ճշմարիտ հաւատով, նա աւելի պարտական է հաստատուն կերպով սկսել այն պատերազմը և յառաջ տանել։ Տօներին քաղաքներում ձեր խանութները և վաճառատները փակեցէք, գիւղի վաճառականներն էլ ձեր օրինակին կը հետևեն. խելքի կըգան եւ գիւղացիք ու տնավաճառների համար ուրիշ օրեր կորոշեն։

Թարգմ. ***

# ԱԶԳԱՅԻՆ

---

## ՏԵՂԵԿԱԳԻՐ

*Ընթացից Նոր-Նախիջևանայ և Բեսսարաբիոյ Թեմական դպրանոցի վասն 1890—91 ուսումնարանական ամին, տուեալ խորհրդարանի Հոգաբարձուաց ի Տեսչէ նորին ի Գալուստ Կարապետեան Զարիխեանէ։*

*Մատուցանելով մեծարոյ Հոգաբարձութեանդ մեր Թեմական Դպրանոցի* 1890—91 *ամի ուսումնական ընթացից տեղեկագիրը, հարկ կհամարիմ յիշել թէ ի նկատի առնելով, որ այս տարի կլրանայ նորա գոյութեան տասնամեայ շրջանը՝ ոչ աւելորդ վարկայ ակնարկ մի ձգել և այդ շրջանի վերայ, ուստի և տեղեկագրիս յարակցեցի համառօտ տեսութիւն և այդ անցեալ տասնամեայ շրջանի վերայ ևս, յուսալով թէ հաղորդած տեղեկութիւններս կարող են արգասաւոր լինել ապագայի համար։ Որովհետև մարդ մը, երբ օր աւուր աշխատանքի հետ լինի և ուշքը դարձնէ միայն այն հանգամանքի վերայ, որ իւր պարտքը արդարապէս կատարէ, շատ անգամ բուն նպատակը աչքէ հեռացնելով կկորցնէ և անտի առաջ կուգան զանազան խոչընդոտներ, ինքն ալ կխոտորի ուղիղ ճանապարհէն և այդպիսով կխափանուի նպատակի իրագործումը։ Այս պատճառաւ շատ օգտակար է և միանգամայն կարևոր՝ եթէ գործակատարութեան միջոց մարդս առ ժամանակ մի դադար առնու, հայեացք մը ձգէ իւր անցեալ գործունէութեան վերայ և ի կշռի դնէ թէ որքան արդեօք ստացած արդիւնքը բաւական է նպատակին հասնելու համար, որպէս զի կարողանայ օգուտներ քաղել և կատարեալ անել նպատակի իրագործումը։ Բաց յայնմանէ, երբ որ մարդս ուշք կդարձնէ իւր ան-*

ցած գործունէութեան վերայ և ակներև կտեսնէ, որ ժամանակը ի զուր անցուցած չէ և արգասաւոր եղել են աշխատանքն ու ջանքը, այն ժամանակ կարծես մի առանձին մխիթարութիւնով կլցուի նորա սիրտը և ի նորոյ կոգևորուի, եթէ թուլանալ ևս սկսած լինի իւր գործունէութեան մէջ, զանազան արգելքներու հանդիպելով՝ նոր ոյժ և զօրութիւն կստանայ եռանդը կրկնապատկելու, որպէս զի հասնի ընտրած բարի նպատակին։ Ինչպէս որ դպրոցի մէջ ուսման ժամանակ անցած առարկաներու կրկնութիւնը կարևոր է շատը նոյն առարկաներու գիտութիւնը յիշողութեան մէջ զարթեցնելու համար, որպէս զի և միւս անցած առարկաներու մէջ կապ մը պահպանուի, այնպէս ալ կեանքի ամեն ասպարիզի գործակատարութեան մէջ պէտքէ յայտնի շրջան անելէն ետքը՝ ակնարկ մը ձգել անցեալի վերայ և խորհել, թէ ուղի՞ղ է արդեօք ընտրած ճանապարհը որոշած նպատակին հասնելու համար, յուսալի՞ են գործածած միջոցները, թէ հարկաւոր է ուրիշ միջոցներու դիմել և ընտրել այլ ճանապարհներ։ Ահա սոյն այս խորհրդածութիւններն անելով, հարկ համարեցի ակնարկ մը ձգել և մեր Դպրանոցի անցեալ տասնամեայ գործունէութեան և ընթացից վերայ, որպէս զի կարելի լինի կարեօք չափ օգուտ քաղել անցած անցքերէն և հոգալ առաջակայում հարկաւորը նորա զարգացմանն ու բարգաւաճմանը համար։

Այսպիսի դիտաւորութեամբ այս խորհրդաւոր րոպէիս՝ ներկայանալով Ձեր առաջ, Մեծարոյ Տեարք, ուրախ եմ ի սրտէ շնորհաւորել մեր կրթական հաստատութեան տասնամեակը, և հրապարակաւ վկայել, որ թէպէտ տասն տարին մի մեծ շրջան չէ որ և է հաստատութեան համար, բայց և այդ կարճ միջոցում մեր Դպրանոցը կարողացել է ակներև ցուցանել իւր արգասաւոր գործունէութեան անժխտելի արդիւնքները։

Մեր Դպրանոցի կոչումն է պատրաստել ընդհանրապէս բոլոր թեմի և մասնաւորապէս մեր քաղաքի համար արժանաւոր հոգևոր հովիւներ, խոհուն և ձեռնհաս ուսուցիչներ ծխական դպրոցաց համար և տալ մեր հասարակութեան պիտանի անդամներ։ Իւր այս տասը տարուայ ընթացքում մեր Դպրանոցը, համարձակ կարող եմ

ասել, աշխատած է միշտ խղճի մտօք հետևել այդ սուրբ նպատակին և ամենայն բարեխղճութեամբ կատարել է իւր բարոյական պարտքը հայ հասարակութեան առաջ։ Իբրև ապացոյց խօսքիս, ես առիթ կունենամ մէջ բերել յարմարաւոր դէպքում կարևոր փաստեր, իսկ առ այժմ կանցնեմ նկարագրելու Դպրանոցիս կացութեան պայմանները նորա սկզբնաւորութենէն մինչև մեր օրերը։

Ինչպէս յայտնի է, մեր Դպրանոցի նախորդը, նորա աւագ եղբայրն եղած է Նախկին Հոգևոր Դպրոցը, որ 1875 թուի Սեպտեմբեր ամսին բացուելով քաղաքումս Հոգևոր Բարձրագոյն Իշխանութեան թոյլտուութեամբ՝ անխափան շարունակած է իւր գոյութիւնը մինչև 1881ը, թուական՝ երբ կայսերական հրամանով փոխադրուեցաւ Թեմական Դպրանոցի։ Այդ Դպրոցը իւր ժամանակին բաւական արդիւնաւոր է եղած, իսկ վերջին տարիները գլխաւորապէս Սրբազան Աղաւնիրեան Գրիգոր Եպիսկոպոսի և մասամբ պ. Փ. Վարդանեանի տեսչութեան օրով և սոցա ջանքով, թէ ուսման ծրագրի նկատմամբ և թէ առհասարակ իւր ներքին բարեկարգութեամբ հասած է նշանաւոր յաջողութեան։ Այդտեղ են պատրաստուած այդ միջոցին մի խումբ յառաջադէմ աշակերտներու, որոցմէն յետոյ կազմուած է Դպրանոցի բարձր դասարանաց նշանաւոր կոնտիգենտը։ Սոյն Հոգևոր Դպրոցը, տարէց տարի բարւոքելով ամենայն մասամբ իւր ուսումնական վիճակը, առիթ է տուած մեր հասարակութեան ձգտելու աւելի բարձր նպատակի, որ և իրագործուած է վերջապէս Հոգևոր Բարձր իշխանութեան ձեռքով։ Ահա այդ ձգտման լրումն եղաւ, երբ 1881 թ. Նոյեմբերի 8 ին Նախիջևանի և Բեսսարաբիոյ Հոգևոր Դպրանոցը, մեր բարեխնամ կառավարութեան թոյլտուութեամբ, բացեց իւր հիւրընկալ դռները քաղաքիս ուսումնածարաւ մանկանց առաջ, գոհացնելով միանգամայն մեր հասարակութեան մէջ վաղուց հետէ զգայուած միջնակարգ դպրոցի պահանջը։ Մեր ժողովուրդը ապրելով ներկայ լուսաւոր դարում և շփուելով քաղաքակիրթ հասարակութեանց հետ, վաղուց հասկացած էր կրթութեան դաստիարակիչ նշանակութիւնը և այդ էր պատճառը, որ ասկէ շատ տարիներ առաջ Նոր—Նախիջևանը տասնեակներով սաներ է տուած թէ Լազարեան ճեմարանին և

թէ Խալիպեան դպրոցին, չնայելով որ այդ կրթական կենդրոնները թէ իւրեանց հեռաւորութեամբ և թէ մեծ մեծ ծախքերու պատճառաւ յարմար չեն եղած այդ նպատակի համար և սակաւ մատչելի։ Լազարեան հռչակաւոր ճեմարանը իւր ժամանակին մեծ օգուտ է տուած մեր հասարակութեան, բայց արդի ճեմարանը չունի իւր նախկին նշանակութիւնը մեր քաղաքացւոց համար, ուստի և նորա մէջ ուսանող նախիջևանցոց թիւը այժմ շատ սահմանափակ է, եթէ չեմ սխալւում, միայն 5 հոգի են։ Ինչ որ կը վերաբերի Խալիպեան դպրոցին, պէտք է խոստովանել, որ նա ևս թէպէտ ունեցաւ իւր համեմատական արդիւնքը, բայց դժբաղդաբար իւր գոյութիւնը երկար չտևելուն պատճառաւ, չկարողացաւ նշանաւոր ծառայութիւն մատուցանել մեր հասարակութեանը։ Խալիպեան ուսումնարանի ինչքը՝ նորա հոյակապ շէնքը և մեծածախ տպարանը բաժին հասաւ մեր դպրանոցին, որ ստանձնեց իւր վերայ ամբողջ Թեմի Հայ հասարակութեան նկատմամբ և նորա բարոյական կոչումը, որքան դա կը համապատասխանէր նորահաստատ դպրանոցի նպատակներուն։

Դպրանոցի սկզբնաւորութեան վերայ խօսք բանալով, բարոյական պարտք կը համարիմ յիշեցնել Ձեզ, Յարգելի պարոններ, այն պատկառելի անձի անունը, որի հայրական խնամքին և անդուլ ջանքերուն պարտական ենք մենք գլխաւորապէս մեր դպրանոցի գոյութեամբ. այն է մեր հանգուցեալ Գէորգ Դ. ազգասէր կաթուղիկոսի։ Նորա շատ ուրիշ փայլուն գործոց շարքում ոչ պակաս տեղ կը գրաւէ և մեր դպրանոցը, որի բացումը իրագործած է նա բազում արգելքների յաղթելով։

Դեռ Խալիպեան դպրոցի փակման միջոցին երջանկայիշատակ Օգոստափառ Մեծ կայսր Աղեքսանդր II-ը բարեհաճած էր հրամայել, որ նոյն ուսումնարանը փոխադրուի թեմական դպրանոցի, նորա շէնքը յատկացուի Ազգիս ընդհանրական Հայրապետին։ Այդ խորհրդաւոր օրէն ի վեր ազգասէր Հայրապետը անխոնջ հետևողութեամբ և մեծ հաստատամտութեամբ վերաբերած է այդ խնդրին։ Հոգալով նախապէս ապահովել դպրանոցի անխափան պահպանութիւնը հաստատուն հասոյթներով և պէտքին պէս կարգադրելով դոյն

խնդիրը, հանգուցեալ Հայրապետը ամեն կերպ աշխատած է ընդունելի կացուցանել իւր առաջարկութիւնը Տէրութեան առաջ և հաստատել տալ թեմական դպրանոցի համար իւր կազմած կանոնադրութիւնը։ Նորա անդուլ ջանքերը վերջապէս իրականացնել իւր վաղուցուայ ջերմ ցանկութիւնը, ընծայելով մեր թեմի ժողովրդին մի միջնակարգ հոգևոր դպրոց, որ կատարելապէս պիտի համապատասխանէր ժողովրդի էական պահանջներուն։ Եւ յիրաւի, Նոր բացուելի դպրանոցը՝ ունենալով իւր ծրագրի մէջ միւս տարրական գիտութեանց շարքում՝ և լատին լեզուն, պիտի գոհացնէր մասամբ ժողովրդի և այն դասակարգի պահանջը, որ կուսակից էր կլասիքական կրթութեան։

Նոյն բարոյական պարտքը կստիպէ ինձ յաւելուլ, որ այս սուրբ գործի մէջ հանգուցեալ Գէորգ Դ. ազգասէր Հայրապետին արժանաւոր աջակից և բանիբուն գործակից է եղած երջանկայիշատակ Տ. Մակար կաթուղիկոսը, որ 1881 թուակ. վիճակաւոր Առաջնորդ էր թեմիս։ Նոյն ամի Մայիս ամսին գալով Նոր-Նախիջևան և շարունակ ամիս ու կէս զբաղուելով դպրոցի խնդիրներով, Նորին սրբազնութիւնը չէ զլացած այդ առթիւ խորհրդակցիլ բանիմաց անձանց հետ՝ օգտուելու նոցա հայրենասէր ձեռնտուութենէն, և ապա անձամբ հասու լինելով՝ ամենայն հանգամանաց և հիմնաւորապէս որոշելով դպրանոցի ապագայ եկամուտները, կարևոր կարգադրութիւններ է արած և նախապատրաստած է ամենայն ինչ թեմական դպրանոցի պաշտօնական բացման համար։

Այս խորհրդաւոր հանդիսին, յիշելով Դպրանոցի բազմերախտ հիմնադիրներու անունները և պատուելով նոցա յիշատակը, մաղթենք Աստուծմէ, որ ազգիս նոր ընտրելի Հայրապետը ևս նոյն սէրն ու խնամքը ընծայէ մեր նորաբողբոջ հաստատութեան, որպիսին ընծայած էին նախորդ երկու երջանկայիշատակ մեծ Հայրապետները։

Դարձեալ երախտագիտական պարտքը կստիպէ ինձ հրապարակաւ յայտնել մեր խորին գոհունակութիւնը և այն պատուաւոր անձանց, որոնք նոյն իսկ գործի մէջ իւրեանց շրջանկատ խորհուրդներով նպաստած են հոգևոր իշխանութեանը դպրոցի բացման

խնդրին հիմնաւոր ընթացք տալու, հոգ տանելով նաև նորա նիւթական ապահովութեանը վերայ։

Աւելորդ համարելով մի առ մի յիշել դոցա անունները, չեմ կարող չդարձնել Ձեր ուշադրութիւնը նաև այն ուրախալի երևոյթին վերայ, որ ներկայ հոգաբարձութեան մեծամասնութիւնը իւր յարգելի նախագահով, բազմարդիւն և բազմաշխատ գործավարով և ժրաջան անդամներով դպրանոցի բացման ջերմ կուսակիցներ լինելով՝ գործակից են եղած դպրոցի հիմնարկութեանը, և այսօր տասը տարի անցնելէն վերջը, բաղդի բերմամբ, նոյն կանգնած են այդ կրթական գործի գլուխը։

Ոչ պակաս ուշադրութեան արժանի է և այն հանգամանքը, որ ներկայ հոգաբարձութիւնը կազմուած է գլխաւորապէս երկու միմեանց արժանաւորապէս լրացնող տարրերէ, նորա մէկ մասը կկազմեն հասարակական գործունէութեան ասպարիզում փորձըւած անձինք, միւս մասը կկազմեն կրթուած երիտասարդներ, որոնք ծանօթ լինելով դպրոցական արդի գործիչ մանկավարժութեան պահանջներուն, ունին միջոց հսկել և ուսման ընթացքի վերայ։

Մեր դպրանոցը իւր գոյութեան առաջին օրէն վայելած է հասարակութեան բուռն համակրանքը, որը ապահովացրած է նորան որոշ գումար յատկացնելով մօտ 7000 րուբլի ի հասարակական եկամտից։ Հոգևոր իշխանութիւնը ևս իւր կողմանէ նպաստներ որոշած է եկեղեցական գումարներէն այնքան, որքան կարող էր նշանակել նոցա եկամուտներուն նայելով, և չէ անյայտ, որ նոյն իսկ բացման հանդիսի օրը ներկայ Հոգաբարձութեան յարգելի նախագահի առաջարկութեամբ, որ այն ժամանակ ևս Հոգաբարձութեան անդամի պաշտօն կվարէր, հանգանակեցաւ մի նշանաւոր գումար և դպրոցի հիմնական և աշակերտական մատենադարանի համար։

Դպրոցական մատենադարանի կարևորութիւնը պարզ է, նա սերտ կապ ունի դպրոցի բարգաւաճման խնդրի հետ և իսկապէս կոչուած է լրացնել ուսման գործը։ Այդ իսկ պատճառաւ ցաւ ի սիրտ ստիպուած եմ խոստովանել, որ այդպէս գեղեցիկ սկսուած

գործը, հանգամանքներու շնորհիւ, սխալ ուղղութիւն ընդունեց և մենք մինչև օրս զուրկ ենք դպրոցական պատշաճաւոր մատենադարանէ, որ անշուշտ կարող էինք ունենալ, եթէ դպրոցի կարեաց համեմատ գործադրուէր այդ նպատակի համար հանգանակած գումարը։

Ուրիշ անգամ ևս առիթ եմ ունեցած տեղեկագրիս մէջ խօսել այս հանգամանքի վերայ, և եթէ այժմ դարձեալ կյարուցանեմ նոյն խնդիրը, պատճառն անշուշտ դորա կարևորութիւնն է։

Մեր այժմեան մատենադարանի վերայ գոնէ մի մերձաւոր գաղափար տալու համար այսքանս կասեմ, որ նա սակաւ բացառութեամբ, կազմուած է տիրապէս Մխիթարեան ուխտի հրատարակութիւններէն։

Խօսք չկայ, որ դոցա մէջ կան և շատ հիմնաւոր աշխատութիւններ, կան և կլասիքական գրուածներ, բայց միւս կողմէն պակաս չեն և այնպիսի հնացած անքովանդակ գրքեր, որոնք առանձին արժէք մը չունին, մանաւանդ դպրոցական մատենադարանի համար և բոլորովին աւելորդ բալլաստ կըկազմեն։ Ինքն ըստ ինքեան պարզ է, որ հիմնական մատենադարանի պահանջները բազմակողմանի են և լոկ վենետկեցոց հրատարակութիւնները, որքան ալ կատարեալ լինին, չեն կարող այդ պահանջները լրացնել։ Որքան որ պակասաւոր է գրադարանի հիմնական բաժինը, կրկին անգամ աւելի աղքատ է նորա մանկական մասը, մենք չունինք միջոց աշակերտաց ընթերցասիրութիւնը զարգացնելու. մեր ունեցած մանկական գրքերու թիւը այնչափ սահմանափակ է, որ թէ մեծ ու թէ փոքր տղայք կկարդան, համարեա միևնոյն գրքերը, մինչդեռ կարևոր է, որ իւրաքանչիւր հասակի համար որոշ բաժիններ ունենանք, որպէս զի կանոնաւոր ուղղութիւն տրուի տղայոց մտաւոր զարգացմանը։

Այսօր նորէն խօսելով այս խնդրի վերայ, կվստահանամ յուսալ, որ յարգելի հոգաբարձութիւնը իրեն յատուկ պատրաստականութեամբ օգնութեան ձեռք կկարկառէ մեզ այս կարևոր խնդրում, կարելւոյն չափ բարւոքելով մեր աղքատիկ մատենադարանը։ Այսքան բաւական համարելով մատենադարանի խնդրի

*նկատմամբ՝ կշարունակեմ խօսքս Դպրանոցի ընդհանուր ուղղութեան վերայ։*

*Նորաբաց Դպրանոցի Հոգաբարձութիւնը, դպրոցի նիւթական վիճակը կարեօք չափ ապահոված համարելով, բնական է, որ պիտի խորհէր բարւոքելու և նորա ուսումնական մասը յանձնելով նորա տեսչութիւնը մի հմուտ ղեկավարի ձեռք։ Հոգևոր դպրոցի նախկին Տեսուչ Գ. Փ. Վարդանեանը, վեհափառ Գէորգ Դ. Կաթուղիկոսի հրամանով, Գէորգեան Ճեմարանի դասատու նշանակուելով, չէր կարող ստանձնել դպրանոցի կառավարութեան գործը. ուստի հարկ եղաւ այդ կարևոր պաշտօնի համար հրաւիրել մի ուրիշ յարմարաւոր անձն։ Այդպիսի հանգամանքներում Հոգաբարձութիւնը պատշաճ կհամարէ դիմել Արժ. Զարիֆեան Խաչատուր ա. քահանային, և խնդրել որ գոնէ ժամանակաւորապէս յանձն առնու Դպրանոցի ղեկավարութիւնը, մինչև որ այդ պաշտօնին համար կառնէ իւր արժանաւոր ընտրութիւնը։ Հայր Զարիֆեանը երկար տարիներ քաղաքիս դպրոցներում կրօնուսուցի պաշտօն վարելով, իբրև փորձառու անձն կարեօք չափ կկառավարէ իրեն տեսչութեան յանձնուած դպրոցը* 1881—1882 *ուսումն. տարւոյ ընթացքում։ Արժ. հօր տեղեկագրէն, որ «Նախագիտելիք» մակագրով տպագրութեամբ լոյս ընծայուած է Դպրանոցի կանոնադրութեան հետ միասին, կերևայ որ վիճակիս Թեմական Հոգևոր Դպրանոցը, իւր գոյութեան առաջին տարւոյ ուսումնական շրջանին մէջ, քաղաքի հանգամանաց նայելով, ունեցած է միայն երկու Դպրանոցական դասարաններ, այն է՝ առաջին և երկրորդ և երեք Նախակրթարանաց բաժիններ, ստորին, միջին և բարձր։ Աշակերտաց թիւն էր առաջին դասարանի մէջ* 21, *երկրորդին՝* 20, *Նախակրթարանի ստորին բաժնի մէջ* 29, *միջին՝* 37, *և բարձր* 45, *ընդ ամենայն* 152 *հոգի։ Երկու Դպրանոցական դասարանաց մէջ աւանդելի առարկաներն էին՝ կրօն, լեզուներ՝ Հայոց, Ռուսաց, Լատինաց, Գաղղիացւոց և առարկայք՝ Թուաբանութիւն, Պատմութիւն, Աշխարհագրութիւն, Գծագրութիւն, Գեղագրութիւն, Երգեցողութիւն և մարմնամարզութիւն։ Իսկ Նախակրթարանաց մէջ՝ կրօն, Հայոց և ռուսաց լեզուներ, Թուաբանութիւն, գիր և երգեցողութիւն։*

Ուսմանց բովանդակութիւնը եղած է ըստ կարի արքունի միջնակարգ ուսումնարանաց ծրագրին համաձայն։

Այս տեղեկութիւնները մենք քաղուածօրէն մէջ բերինք կանոնադրութեան «Նախագիտելիք» բաժնէն։ Նոյն տեղեկագրէն կիմանանք, որ Դպրանոցի ուսուցիչներ նշանակուած են ժամանակաւորապէս Հոգևոր Դպրոցի նախկին դասատուները, որոց փոխարէն վարչութիւնը մտադրութիւն է ունեցած հրաւիրել ժամանակին, այսինքն աւելի բարձր դասարաններ բացուելուն պէս, բարձրագոյն ուսումնարաններէ աւարտած և աւելի բանիբուն վարժապետներ։

Այդ գեղեցիկ մտադրութիւնը, ինչպէս յայտնի է, Դպրոցի ներկայ վարչութիւնը արդէն իրագործած է։ Դպրանոցի Հոգաբարձութիւնը, խորհելով յարմարաւոր Տեսչի ընտրութեան խնդրի վերայ, երկար խորհրդածութիւններէ յետոյ, որոշած է հրաւիրել յիշեալ պաշտօնը վարելու Հայ հասարակութեան մէջ մասնագէտ մանկավարժի հռչակ ունեցող, այժմ հանգուցեալ, Առաքել Բահաթրեանին, որ աւարտած լինելով Լազարեան ճեմարանի լիկեոնը, երկար տարիներ արտասահմանի նշանաւոր համալսարաններում մասնագիտաբար ուսումնասիրած էր տեսական և գործնական մանկավարժութիւն։

Հանգուցեալ Բահաթրեանը, ընդունելով Հոգաբարձութեան հրաւէրը կշտապէ վաղօրօք, ամառուանէ ժամանել Նոր-Նախիջևան և 1882—83 ուսումն. տարւոյ սկզբին մի շարք ժողովներու մէջ ուսուցչաց գործակցութեամբ կսահմանէ ուսման մանրամասն ծրագիրներ երեք պատրաստական և երեք դպրանոցական դասարանաց համար։

Ուսուցչաց ժողովի սահմանած սոյն այս ծրագիրը յարմարեցուցած էր ըստ կարելւոյն միջնակարգ Դպրոցի կարեաց համաձայն և նոր պահանջներ բովանդակելով իւր մէջ ընդունուած էր իբրև ժամանակաւոր փորձի համար։

Ծրագրի գործադրութիւնը մասամբ թեթևացնելու մտօք, հանգուցեալ Բահաթրեանը յօրինած էր նաև, համարեա իւրաքանչիւր առարկայի համար օրինակելի դասեր, որոնք կարող էին ծառայել ուսուցչաց իբրև ուղեցոյց։

Պէտք է խոստովանել, որ շատ մեծ աշխատանք է գործ դրած հանգուցեալը ուսման ծրագրի և դասերու մշակութեան վերայ և մեծ հմտութեամբ է կատարած իւր գործը։ Բաւական չհամարելով յիշեալ գրաւոր մանրամասնօրէն մշակուած ծրագիրը, իւր առաջադրած նպատակի յաջողութեանը համար, նա անձամբ առաջնորդած է նախակրթարանի ուսուցչաց առաջին անփորձ քայլերը։

Այսպիսի օրինակելի եռանդով սկսուած գործը անշուշտ պիտի բերէր և զգալի արդիւնքներ, ուստի մեզ կմնայ միայն ցաւել, որ հանգուցեալ Բաղաթրեանի շահաւէտ ծառայութիւնը Նախիջևանի Դպրանոցին կարճատև եղաւ, մի տարի անգամ չտևեց, և ազգային կրթութեան անդաստանը շատ շուտ զրկուեցաւ իւր անձնուէր մշակէն, նորա հիւանդութեան և ապա վերահաս մահուան պատճառաւ։

Այնուհետև, ինչպէս յայտնի է 1883—84 ուսումն. տարւոյ սկզբէն Դպրանոցի ղեկավարութիւնը կյանձնուի նուաստիս։ Թողնելով ուրիշներուն դատել իմ գործունէութեան վերայ, ես միայն կբաւականանամ մատնացոյց անելով այն հանգամանաց վերայ, թէ իմ տեսչութեան օրով Հոգաբարձուաց խորհրդարանի հաւանութեամբ և ուսուցչաց ժողովի գործակցութեամբ եղել են այն ամենայն կարևոր կարգադրութիւնները, որոնք յայտնի բնաւորութիւն են հաղորդած մեր Դպրանոցին և որոշած են նորա այս կամ այն ուղղութիւնը, որ ունի նա այս օրս։

Յայտնի է ամենքին, որ մեր քաղաքի հասարակութեան մի որոշ մասը ցանկացած է մեր Դպրանոցին կլասիքական Դպրոցի ուղղութիւն տալ, որպէս զի սա կարող լինի ծառայել թէ իւր գլխաւոր նպատակին և թէ ժողովրդի հարուստ դասակարգի շահերուն։

Հոգաբարձութեան անդամները, սոյն այս ուղղութեան հետևող լինելով՝ շատ անգամ առիթ են ունեցած արծարծել այդ խնդիրը իւրեանց ժողովներու մէջ, և ես կարեօք չափ նպաստած եմ այդ նպատակին հասնելու։

Կլասիքական գիմնազիոնի համեմատութեամբ, մեր Դպրանոցի ծրագրէն գլխաւորապէս կպակասէր Յունաց լեզուն, որ և Հոգա-

*բարձութիւնը վճռած էր ներմուծել դասաւանդելի առարկայից շարքը։*

*Այդ լեզուի դասերը բաւական ժամանակ աւանդուեցան Դպրանոցում և անշուշտ պիտի կարողանային ծառայել իրենց նպատակին, եթէ հոգևոր բարձրագոյն իշխանութեան կողմէն արգելքի չհանդիպէին։*

*Կատարուեցան հեղհետէ կարևոր բարենորոգումներ Դպրանոցի մէջ, լրացաւ Դպրանոցական դասարանաց թիւը, կազմակերպեցաւ ուսուցչաց նոր խումբը, որոյ աշխատութեամբ մշակեցաւ Դպրանոցիս ուսման ծրագիրը, որ և հաստատութիւն գտաւ վեհափառ կաթուղիկոսէն, ձեռք բերուեցան ուսումնական կարևոր պիտոյքներ, նամանաւանդ ֆիզիքական հարուստ թանգարան, գործադրուեցան քննութեանց նոր և նպատակայարմար եղանակ և ցայսօր արձակուեցաւ 4 խումբ շրջանաւարտ աշակերտներ։*

*Սոքա այնպիսի հանրածանօթ փաստեր են, որ աւելորդ կհամարիմ երկարօրէն կանգ առնել դոցա վերայ։*

*Ներկայումս մեր Դպրանոցը ունի երեք պատրաստական և վեց Դպրանոցական դասարաններ, որոց մէջ բացի միջնակարգ Դպրոցի դասընթացը կազմող առարկաներէն, կաւանդուին նոյնպէս և Աստուածաբանական գիտութիւններ։*

*Դպրանոցը ունի ֆիզիքական մի շքեղ թանգարան, որ կատարելապէս կգոհացնէ աշակերտաց կարիքը, ունի նոյնպէս հիմնական և աշակերտական մատենադարան, որ թէ և գոհացուցիչ չէ ինչպէս վերևը ասուեցաւ, բայց և այնպէս կպարունակէ իւր մէջ ընդամենը 900ի չափ գիրք, որոնցմէ 124 մատենագրական, 45 թարգմանական, 9 փիլիսոփայական, 17 քերականական, 29 թատերական, 121 կրօնական, 70 պատմական, 47 մաթեմաթիկական, 31 տեղագրական, 36 մանկավարժական, 35 բառգիրք, և 30ի չափ օրագրական, այլ և 300ի չափ հայերէն և ռուսերէն մանկական գրքեր։*

*Դպրանոցի ներկայ ուսուցչաց խումբը բաղկացած է 17 անձինքներէ, որոնց թւում է Տեսուչը և երեք վերակացու, այլ և ունի Դպրանոցը և իւր բժիշկը, որ ձրիապէս կկատարէ իւր պաշտօնը*

և արժանի է մեր խորին շնորհակալութեանը, որպիսին է Գ. Քեչեկեանը։

Գալով Դպրանոցի աշակերտաց ընդհանուր թուին, պէտք է ասել, որ սա կտատանուի 210—230 ի մէջ, այս թուէն 60—80 ձրիավարժ են և մնացեալները թոշակաւոր։

Թոշակաւորների թւում կան սաներ, բարեգործական հաստատութեանց և մասնաւոր անձանց՝ որպիսիք են սան Մինաս Գալասանեանի և բարեգործական ընկերութեան 32 հոգիք, յորոց 10ին համար կվճարուին թոշակ, ուսումն. պիտոյք և հանդերձեղէն, իսկ միւս 22ին միայն ուսումն. պիտոյք և հանդերձ առանց թոշակադրամի։ Աշակերտաց գլխաւոր տարրը կազմել են միշտ մեր քաղաքացիք, այնուհետև կհետևեն գիւղացիք, սակաւաթիւ են և օտարաքաղաքացիք։ Այս վերջիններու թիւը վերջին տարիները, կարծես թէ կաւելանայ, և պէտք է յուսալ՝ որ երբ Դպրանոցը գիշերօթիկ դառնայ, աւելի ևս կստուարանայ նոցա թիւը։

Անցնելով աշակերտաց յառաջադիմութեան խնդրին, հարկ կըհամարիմ մէջ բերել, թէ Դպրանոցս՝ լրացնելով իւր վեց դասարանաց թիւը, արձակած է ցայսօր չորս խումբ շրջանաւարտ աշակերտներ։

1886—87 ուսումն. տարւոյ շրջանին մէջ Դպրանոցը արձակած է 5 ուսումնաւարտ աշակերտներ. Զաթալպաշեան Սերովբէ, Քելլէշահինեան Յովհաննէս, Բեդելեան Գէորգ, Զարիֆեան Յովհաննէս և Թուսուզեան Միքայէլ. սոցանէ 3ը այժմ ուսուցչութեամբ կպարապեն, մէկը կշարունակէ իւր ուսումը Գէորգեան ճեմարանի մասնագիտական բաժնում և մէկը կզբաղի մասնաւոր գործերով։

Հետևեալ տարին Դպրանոցը ինչ ինչ պատճառներով ուսումնաւարտ աշակերտ արձակած չէ։

1888—89 տարւոյ շրջանին Դպրանոցէն աւարտել են դարձեալ 5 հոգի, Տէր Սարգսեան Օգսէնտ, Պարդախչեան Յակոբ, Տէր Յակոբեան Պետրոս, Խարիպեան Լուսեղէն և Պաթրեան Գէորգ։ Սոցանէ երկուսը կպարապեն ուսուցչութեամբ, մէկը եկեղեցւոյ պաշտօնեայ է և մնացեալ երկուսը կզբաղեն մասնաւոր գործերով։

1889—90 տարւոյ վերջը Դպրանոցի ընթացքը աւարտած են 4 հոգի՝ Քէչէկեան Համբարձում, Բեդելեան Յովակիմ, Բերբերեան Ռուբէն և Ծուռլիղեան Ռափայէլ, որոնցմէ 2ը շատ յաջող կերպով կշարունակեն իրենց ուսումը արքունի դպրոցներում, 1ը արտասահմանի համալսարանում և մէկն ալ կպարապի տպագրութեան արուեստով։

Վերջապէս 1890—91 շրջանին Դպրանոցը արձակած է 3 շրջանաւարտ աշակերտ. Թիթրեան Պետրոս, Ալաճալեան Լևոն և Խարիպեան Կարապետ, որոնցմէ երկուսը ուղևորուել են արտասահման իրենց կրթութիւնը շարունակելու և մէկը կզբաղի մասնաւոր գործով։

Ուրեմն աւարտողաց ընդհանուր թիւը 17 է, որոնցմէ 3ը կշարունակեն արտասահմանի համալսարաններում, երկուսը արքունի դպրոցներում, մէկը Գէորգեան ճեմարանում, հինգը ուսուցչական պաշտօն կվարեն, մէկը եկեղեցւոյ սպասաւոր է և չորսը իրենց մասնաւոր գործերով կպարապեն, բոլորովին շատացած համարելով իրենց ստացած դպրոցական ուսմամբը։ Ուսուցչութեամբ պարապողներէն երեքը և Գէորգեան ճեմարանում ուսանողը այժմէն իսկ պատրաստ են հոգևորական կոչումն ընդունելու։ Ուշադրութեան և մխիթարութեան արժանի է այն հանգամանքը, որ աւարտողաց մեծամասնութիւնը իբրև ուսուցիչներ, հոգևոր պաշտօնեաներ և քաղաքում մասնաւոր գործով զբաղուող անձինք, պիտի մնան իրենց ծննդավայրերում, և ըստ կարեաց իւրեանց պիտի ծառայեն պիտանացու անդամներ հանդիսանալով։

Ահաւասիկ փաստեր, որ ակներև կանեն այն ճշմարտութիւնը՝ թէ մեր Դպրանոցը աշխատած է միշտ խղճի մտօք հետևել իւր սուրբ նպատակին և ամենայն բարեխղճութեամբ կկատարէ իւր բարոյական պարտքը հայ հասարակութեան առաջը, որոյ մասին խօսք արած էի տեղեկագրիս սկիզբը։

Աշակերտաց յառաջադիմութեան մասին գաղափար մի տալու համար ոչ աւելորդ կհամարիմ զետեղել այստեղ երկու աղիւսակ ցուցակ, որոնցմէ ակներև կտեսնուին թէ քանի աշակերտներ ընդունուած են Դպրանոց յընթացս նորա տասնամեայ շրջանին, և յընթացս 1890—91 ուսումն. տարւոյն, որքան փոխադրուած են դասարանէ դասարան և որքան արձակուած։

# ՅՈՒՑԱԿ

Թուոյ աշակերտաց Թեմ. Դպրանոցի ըստ դասարանաց վասն 1881—1891 ամենամեայ ընթացից:

| ԴԱՍԱՐԱՆՔ | Ի սկզբան աշակերտ | Արձակելոց տարւոյն մէջ: Ըստ կամաց. | Արձակելոց տարւոյն մէջ: Ըստ որոշման վարչութեան: | Ի վերջ աշակերտ. | Արձակելոց տարւոյն վերջը: Ըստ կամաց. | Արձակելոց տարւոյն վերջը: Ըստ որոշման վարչութեան: | Փոխադրեցան ի վերին դասարանս ի վերջ տարւոյն: | Մնացեալ ի նոյն դասարանս. | Թողեալ ուսումն. | Զրկեալք. | Նորեկ աշակերտք. |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ստորին Նախակրթա. | 473 | 12 | 2 | 459 | 12 | 7 | 297 | 143 | 304 | 169 | 334 |
| Միջին Նախակրթա. | 403 | 10 | » | 393 | 7 | 3 | 248 | 135 | 286 | 117 | 84 |
| Բարձր Նախակրթա. | 508 | 21 | 5 | 482 | 6 | 30 | 257 | 189 | 357 | 151 | 63 |
| Ա. Դասարան. | 362 | 14 | 2 | 346 | 18 | 8 | 170 | 150 | 275 | 87 | 20 |
| Բ. Դասարան. | 215 | 22 | 2 | 191 | 13 | 8 | 102 | 68 | 144 | 71 | 4 |
| Գ. Դասարան. | 88 | 6 | » | 82 | 3 | » | 59 | 20 | 59 | 29 | » |
| Դ. Դասարան. | 44 | 1 | » | 43 | 2 | » | 34 | 7 | 27 | 17 | » |
| Ե. Դասարան. | 26 | » | » | 26 | » | » | 25 | 1 | 10 | 16 | » |
| Զ. Դասարան. | 20 | » | » | 20 | 1 | » | 17 | 2 | 9 | 11 | » |
| | 2139 | 86 | 11 | 2042 | 62 | 56 | 1209 | 715 | 1471 | 668 | 505 |

# ՑՈՒՑԱԿ

*Թուոյ աշակերտաց Թեմ. Դպրանոցի ըստ դասարանաց յընթացս 1890—1891 ուսումն. ամի։*

| ԴԱՍԱՐԱՆՔ։ | ԹԻՒ ԱՇԱԿԵՐՏԱՑ։ | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Տարւոյն սկսման ընթաց-քի մէջ։ | Արձակեցոց տարւոյն մէջ: Ըստ կամաց. | Արձակեցոց տարւոյն մէջ: Ըստ առաջարկման վարչութեան. | Տարւոյն վերջը. | Արձակեցոց տարւոյն վերջը: Ըստ կամաց. | Արձակեցոց տարւոյն վերջը: Ըստ առաջարկման վարչութեան. | Փոխադրուեցան. | Մնացին. | Թոշակաւորաց. | Ձրիավարժից։ |
| VI | 5 | » | » | 5 | 1 | » | 3 | 1 | 2 | 3 |
| V | 5 | » | » | 5 | » | » | 5 | » | 1 | 4 |
| IV | 7 | » | » | 7 | » | » | 5 | 2 | 5 | 2 |
| III | 8 | » | » | 8 | 1 | » | 5 | 2 | 2 | 6 |
| II | 24 | 3 | 1 | 20 | » | » | 12 | 8 | 11 | 13 |
| I | 30 | 2 | » | 28 | » | » | 16 | 12 | 20 | 10 |
| Բարձր նախակրթ. | 45 | 3 | » | 42 | » | » | 27 | 15 | 26 | 19 |
| Միջին նախակրթ. | 54 | 2 | » | 52 | 2 | 2 | 31 | 17 | 38 | 16 |
| Ստորին նախակր. | 48 | 2 | » | 46 | 2 | » | 27 | 17 | 35 | 13 |
| Գումար . . . | 226 | 12 | 1 | 213 | 6 | 2 | 131 | 74 | 140 | 86 |

Ինչպէս կերևայ մէջ բերուած այս աղիւսակներէն, թէ նախընթաց 1890—91 ուսումնական ընթացքում և թէ անցեալ տասնամեայ շրջանին, մեր դպրանոցի աշակերտաց ցոյց տուած յա-

ռաջադիմութիւնը ուսման մէջ բաւականին գոհացուցիչ է, նամանաւանդ եթէ ի նկատի առնունք դպրոցական ընթացքի ծաւալը և համեմատենք պետական միջնակարգ դպրոցներու հետ։

Պատահեցաւ ինձ այս տարի լսել իբր մեղադրանք, թէ ցանկալի է աւելի յառաջադիմութիւն տեսնել Դպրանոցի մէջ և թէ թոյլ աշակերտներ իբրև թէ շատ ունի նա։

Արդարև կան Դպրանոցի մէջ և տկար աշակերտներ, որոց դրաւոր կամ բերանացի թոյլ պատասխանները աչքի զարնուած են քննութեան ներկայ եղողներուն, սակայն դորանով դատել ընդհանուրի մասին և որոշ եզրակացութեան գալ Դպրանոցի աշակերտներու անյառաջադիմութեան մասին, աւելի քան թէ անտեղի կը լինի։

Քննութիւններու արդասեաց խնդիրը պէտք է հիմնել ընդհանուրի վերայ և ապա ըստ այնմ եզրակացութիւններ անել։ Մեր աշակերտները, երբ հարկ եղած է նոցա փոխադրուել պետական գիմնազիոններ կամ ուրիշ տիպարի դպրոցներ, պատիւ բերել են միշտ այդ դպրոցներուն իրենց յառաջադիմութեամբը, հաւասար ընթանալով իրենց ուսումնական ընթացքում նորդաս ընկերներու հետ։ Եւ ի՞նչ կապացուցուի դորանով, ոչ այլ ինչ, բայց եթէ մեր Դպրանոցի աշակերտները կստանան այնքան նախապատրաստութիւն, որ առանց նեղութեան կը մտնեն պետական արքունի դպրոցներ և անխափան կը շարունակեն իրենց ուսումը։ Յիշենք այստեղ Բերբերեաններու, Խնձորեաններու, Տէր-Գրիգորեանի, Ռէիզեաններու, Ասմաեաններու, Ճիվելիկեաններու, Բեդելեաններու, Քիչեկեանի և ուրիշ շատերու, որոնք դուրս գալով Դպրանոցէն մտել են համապատասխան դասարաններ ուսմունք շարունակելու Էջմիածնայ Գէորգեան Ճեմարան, Լազարեանց Ճեմարան, Ռէալական ուսումնարան և Գիմնազիոն (Ռոստով և Ստաւրապոլի), չընայելով այն խիստ պահանջներուն, որ այդպիսի դէպքերում կանուի օտարականներու։ Եթէ այդ դպրոցներու մէջ մեր աշակերտներէն եղել են ոմանք և անյառաջադէմներ, եղել են նոքա տկար և թոյլ նաև մեզ մօտ։ Դպրանոյի թոյլ աշակերտը թոյլ է գտնուել և պետական դպրոցի մէջ, չը կարողանալով շարունակել ուսման ընթացքը, ծուլութեան կամ անընդունակութեանը պատ-

ճառաւ, ինչպէս և Դպրանոցում, ուրեմն կարելի չէ ի մեղս Դպրանոցի վերագրել, որ նորա մէջ կը պատահին և անընդունակ աշակերտներ։ Այս ալ ի նկատի պէտք է առնել, որ մեր Դպրանոցը դեռ մանուկ է, նորա տասնամեայ շրջանը մի ուսումնարանական հաստատութեան համար մեծ շրջան չէ և չունի նա նաև այն դրամական ապահով միջոցները, որով օժտուած են պետական ուսումնարանները և որով կարող կը լինին նոքա ընդ առաջ եկած ամեն արգելքներու յաղթելու։ Բաւական է ակնարկ ձգել պետական միջնակարգ ուսումնարանի որև է տիպարի կանխահաշուի վերայ, և դուք կը տեսնէք ահագին զանազանութիւն 15 կամ 20 հազարի, որ կերթայ յատկապէս այս կամ այն մեզանում նկատուած պակասութիւնները ծածկելու կամ նոյնը շրտկելու համար։

Մեր դպրանոյի գործունէութեան մէջ անկարելի է, որ պակասութիւններ չը լինին. բայց կան և շատ յատկանիշներ, որոնք փոխանակ պարսաւանաց արժանի են ամենայն ջատագովութեանց, որոց մասին մի առ մի խօսելը անկարանամ և չը ներէր ինձ ոչ հանգամանքը և ոչ տեղը, բայց չեմ կարող լռելեայն անցնել և այն, որ դժուար գտնուի շատ տեղեր, այն է՝ մեր բոլոր ծառայողաց, սկսեալ մեծարոյ հոգաբարձուներէն մինչև վերջին պաշտօնէի ցուցած ազգասիրական եռանդն ու ջանքը, որով նուիրած լինելով նոքա իրանց անձն ընծայաբար ազգային կրթութեան գործին, չը նայելով չնչին դրամական վարձութեան, հնարաւոր կանեն Դպրանոցին մրցել պետական միջնակարգ դպրոցներու հետ։

Մեր Դպրանոցի մէջ երևցած անյառաջադիմութեան պատճառներէն մէկը պէտք է համարել և մեր աշակերտաց տնային դաստիարակութիւն չունենալը և կացութեան տգեղ պայմանները, որոց մասին պատեհ ունեցել եմ յայտնել հոգաբարձութեան։ Մենք յուսով ենք, որ եթէ ապագայում իրագործուի գիշերօթիկ սաներ ունենալու խնդիրը, աւելի քան թէ կիսով չափ կը թեթևանայ և կը պակասին մեր յառաջադիմութեան գլխաւոր խոչընդոտները։ Ո՞վ կարող է ուրանալ, որ բարոյական և մտաւոր զարգացման աստիճանը մեծ ազդեցութիւն ունի սանիկի ընդհա-

նուր զարգացմանը ու դպրոցի բարգաւաճութեան և յառաջադիմութեանը։ Մեր դպրոցի աշակերտներէն ոմանք, գալով օտար քաղաքէ և զրկուած լինելով ծնողաց խնամքէն, առանց մեր գիտութեան կը յանձնուին շահամոլ մարդոց ձեռքը, որոնք փոխանակ խնամք տանելու խեղճ երեխային վերայ և նորա ամեն պէտքերը ըստ կարգին հոգալու, բոլորովին անխնամ կը թողուն և պատճառ կը տան շատ անգամ բարոյապէս ևս փչանալու։ Վարչութիւնս հնար չունի արժանապէս հսկելու նոցա վերայ և չարեաց առաջն առնելու։ Մենք կողմնակի կերպով իմանալով այդ խեղճերու անտանելի վիճակը, աշխատել ենք միշտ դորա առաջն առնելու հրաւիրելով ծնողաց ուշադրութիւնը. բայց աւա՜ղ քանի քանի աշակերտներ զոհ գնացած են անգիտակցաբար իրենց ծնողաց անտարբերութենէն կեղծ խնամակալներու շահախնդրութեանը։

Այս հանգամանքները աչքի առաջ ունենալով, այլ և ի նկատի առնելով, թէ մեր թեմի ուրիշ քաղաքի ժողովուրդներն ևս չունենալով բարեկարգ ազգային դպրոցներ, որտեղ որ կարելի լինէր իրենց զաւակներուն ուսուցանել մայրենի լեզուն և կրօնը՝ ցանկութիւն կը յայտնեն տալ իրենց որդիքը Դպրանոցիս յաշակերտութիւն, և Դպրանոցի վարչութիւնը շատ անգամ ստիպուած է մերժել նոցա խնդիրը շինուածոյ անձկութեան պատճառաւ և որ ցաւալին է՝ Դպրանոցի մէջ գիշերօթիկ սանուց համար սեպհական օթեւանք չունենալուն պատճառաւ, վասն որոյ մեծարոյ Հոգաբարձութիւնը այս տարի որոշեց և վճռեց դորա համար Դպրանոցի շէնքը ընդլայնել, որչափ կարելին է, նշանաւոր շինուած մի ևս դպրոցական տանը կցելով այն պարապ տեղւոյ վերայ, որ քաղաքի հրապարակը կը նայի։ Այսպիսի դիտաւորութեամբ Դպրանոցի տան ներքնայարկի մի մասը, որ հրապարակի վերայ է, պէտք է վերածուի խանութներու, որ վարձու տրուին, իսկ միւս մասը բակի վերայ պիտի յարմարցուի գիշերօթիկ սանուց բնակութեան համար, այն ժամանակ և վերնայարկը ամբողջապէս կը բռնեն դասարաններ, դահլիճներ և Դպրանոցը կունենայ ամենայն ինչ դպրոցական յարմարութիւն։

Յիշուած այս շինութիւնը 20 հազար րուբլի ծախքի կկարօտէր, Հոգաբարձութիւնը որոշած է այդ պէտքին գործածել իր ցայսօր տնտեսած և անցեալ ամի մնացորդ 125000 ր. գումարը և պակասորդը կյուսայ լրացնել կառուցանելի խանութներու վարձադրամներէն։ Երբ սկսուած այդ շինութիւնը գլուխ գայ, այն ժամանակ հարկաւ հոգացողութիւն կլինի և գիշերօթիկ սանուց պահպանութեան համար, անով ևս կաւելանան Դպրոցի բարգաւաճանաց և յառաջադիմութեան միջոցները։

Ի դէպ կհամարիմ յիշել այստեղ, որ ինչպէս յայտնի է, մեր քաղաքացի Խաչերես աղա Խաչիկեան Տեաչքովեանց, 1881 թիւ սեպտեմբերի 1ին կատարած կտակով աւանդած էր յանձնել մահուանէն ետքը մեր հայ հասարակութեանը 100 հազար րուբլի գումար, այն նպատակաւ, որ այդ գումարի տոկոսիքովը իւր Տեաչքովեանի անուան սաներ դաստիարակուին մեր Դպրանոցի մէջ և նոցանէ յառաջադէմները ապա խրկուին կատարելագործուելու ուրիշ բարձրագոյն ուսումնարաններ։ 1891 թիւ փետրվարի 6ին կամօքն ամենաբարձրելոյն Աստուծոյ կնքեց իւր կենցաղը մեր երջանկայիշատակ բարերար Տեաչքովեան Խաչերես աղայն։ Նորա կտակաւանդած 100 հազար րուբլի գումարը արդէն ստացուած է, բայց նոյն գումարը համաձայն կտակին՝ արքունի դրամատոմսերու փոխուելուն պատճառաւ, տոկոսեաց գործածութիւնը Տեաչքովեան սաներու պահպանութեան համար պէտք է սկսուի ոչ այս տարի, այլ առաջիկայ 1892—93 ուսումնական ամի սկզբէն։

Գալով մեր Դպրանոցի աշակերտաց՝ 1890—91 ամի ուսումնական ընթացից պատշաճ կհամարիմ մի քանի կարևոր տեղեկութիւններ հաղորդել նոյն տարուայ ուսումնական շրջանի մասին, ապա յարակցել ուսուցչական խորհրդոյ վերջին կարգադրութիւնը, որով աշակերտք փոխադրուած են դասարանէ դասարան։

1890—91 ուսումնարանական տարուայ ընթացքում Դպրանոցը ունեցած է 8 ուսուցչաց ժողով, որոնք ըստ սովորականին նուիրուած էին Դպրոցական զանազան խնդրոց քննութեանը։ Բացի սովորական զբաղմունքներէ, որ կվերաբերին աշակերտաց քառորդական յառաջադիմութեան խնդրին, ուսուցչաց ժողովը ի միջի

այլոց պարապած է նաև այն նոր դասագրոց քննութեամբ, որ ուսուցիչներէն ոմանք առաջարկած էին գործադրութեան համար հներու փոխարէն, այդպէս մանրազննին և բազմակողմանի քննադատութիւնէ յետոյ, կարգադրուած է ա. Ռուս. լ. Պաուլսոնի ձեռնարկի տեղ ընդունել Բունակովի, “Первинка„ անունով դասագրքի I և II մասեր, պատրաստական դասարանաց համար. բ, II դաս. հայոց լեզուի դասաւանդութեան համար որոշուած է Պ. Կոստանեանի ծաղկաքաղի նիւթը բաւական չհամարելով օգտուել նա և Հ. Ղևոնդ Յովնանեանի ծաղիկ ս. գրոց գրքէն. գ, Հայոց պատմութեան Աբովեանի ձեռնարկի փոխարէն գործածել Ս. Պալասանեանի պատմութեան դասագիրքը, որ թէ իւր ներքին բովանդակութեամբ և թէ լեզուի պատշաճաւորութեամբ շատ բարձր է առաջինէն. դ. Ռուսաց պատմութեան Իլովայսկիի ձեռնարկը փոխարինել “Рождественскій„ ի պատմութեան դասագրքով, որ յօրինուած լինելով ի պէտս քաղաքային դպրոցաց իւր բովանդակութեամբ կատարելապէս համապատասխան է մեր աշակերտաց համապատասխանը:

---

# ՊԱՏԿԵՐ

ընդհանուր մտից և ելից գումարաց Թեմական Դպրանոցի Նոր-Նախիջևանու և Բեսսարաբիոյ վիճակի Հայոց՝ քաղեալ ի Հաշուէ-մատենից Հոգաբարձութեան նորին և տեսչութեան վասն 1890—91 ուսումն. ամին։

| ՄՈՒՏՔ. | | | | |
|---|---|---|---|---|
| 1. Գումար յաւելեալ ի Հաշուոց նախընթաց ամաց ի սկիզբն նոր 1890—91 ուսումնական ամի . | — | — | 11413 | 23 |
| 2. Վարձ տան Խալիպեան ուսումնարանի, որ ի Թէոդոսիա . . . . . . . | — | — | 3000 | — |
| 3. Նպաստ քաղաքական վարչութեան Նոր—Նախիջևանի . . . . . . . | — | — | 6875 | 37 |
| 4. Թոշակք աշակերտաց Դպրանոցական դասարանաց. | 1528 | — | | |
| » » երից նախակրթական դասարանաց . . . . . . . | 2792 | — | 4320 | — |
| 5. Նպաստք եկեղեցեաց վիճակի՝ այնէ՝ | | | | |
| Վեցից եկեղեցեաց Նոր—Նախիջևան քաղաքի . | 1900 | — | | |
| Հնգից գիւղօրէից նորին . . . . | 275 | — | | |
| Ս. Պետերբուրգայ . . . . . | 750 | — | | |
| Մոսկվայի . . . . . . | 250 | — | | |
| Ս. Խաչ վանուց և Ս. Աստուածածնայ Հին Խրիմու. | 40 | — | | |
| Սիմֆերապօլի . . . . . | 30 | — | | |
| Ագքիրմանի . . . . . . | 30 | — | | |
| Եյսքի . . . . . . | 10 | — | | |
| Նողայսքի . . . . . . | 10 | — | | |
| 6. Գին վաճառեալ գրենոյ ի Մատենադարանէ Դպրա. | — | — | 150 | 20 |
| 7. Տոկոսիք դրամոց ընթացիկ հաշուով . . | 105 | 82 | | |
| Արքունի դրամատոմսաց (10,600.) տարեկան . | 503 | 50 | | |
| Տոկոսիք նոյն դրամատոմսաց մինչև ցօր վաճառման նոցին, այնէ 3 Յունիսի 1891 ամի . . | 211 | 08 | 820 | 40 |
| 8. Գումար աւելի ստացեալ ի վաճառման 10,600 ր. արժէից դրամատոմսաց Դպրանոցի, որ գնեալ էին յառաջ գիւրագնի ըստ հաշուէցուցակի Ազովսկի բանկի . . . . . . . | — | — | 1096 | 50 |
| Գումար տարեկան մտից հանդերձ յաւելուածովքն ի նախընթաց ամաց . . . | 30970 | 70 | | |

## ԾԱԽՔ ԴՊՐԱՆՈՑԻ

ի պահպանութիւն և ի կատարելութիւն Դպրանոցի.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1. Թոշակ Տեսչի եւ ուսուցչաց: | | | | |
| Պ. Չարխեանի վասն Տեսչութեան և 12 դասուց Լատին լեզուի . . . . . | 2520 | — | | |
| Զարիֆեան Տ. Խաչատուր ա. քահ. վասն կրօնի 9 դաս . . . . . . | 540 | — | | |
| Պ. Խաչատրեանի վասն Հայոց լեզուի 14 դաս. | 840 | — | | |
| Պ. Ղահազիզեան վասն Հայոց լեզուի և Աշխարհագրութեան . . . 21 դաս. | 1260 | — | | |
| Պ. Թանգեանի վասն Ռուս և Գաղղիացւոց լեզուաց. . . . . 23 դաս. | 1380 | — | | |
| Պ. Խամբուրեանի վասն Մատեմատ. և Բնագիտական . . . . 25 դաս. | 1500 | — | | |
| Պ. Քիրիլեանի վասն Լատին և Ընդհ. պատմութեան . . . . 20 դաս. | 1200 | — | | |
| Պ. Սիւսիւքինի վասն Ռուսաց լեզուի և Ռուսաց պատմութեան . . . 19 դաս. | 1140 | — | | |
| Պ. Բայպուրթեանի վասն Թուաբանութեան 12 դ. | 720 | — | | |
| Պ. Զամինեանի վասն պատմ. գրականութեան և Եկեղեց. պատմութեան. . 11 դաս. | 660 | — | | |
| Պ. Բախմուտսկիի վասն գծագրութեան 5 դաս. | 200 | — | | |
| Պ. Մարգար Դպրի Տէր-Սարգսեան վասն երգեցողութեան . . . . 4 դաս. | 160 | — | | |
| 2 Թոշակ ուսուցչաց նախակրթարանաց: | | | | |
| Տէր-Սարգսեան դպրի վասն կրօնի և երգեցողութեան. . . . . 13 դաս. | 450 | — | | |
| Պ. Զամինեանի վասն Հայոց լեզուի. 12 դաս. | 480 | — | | |
| Պ. Տէր-Զաքարեանի վասն Ռուսաց լեզուի և Թուաբանութեան . . . 26 դաս. | 1000 | — | | |
| Պ. Չաթալպաշեանի վասն Թուաբանութեան և Գեղագրութեան . . . 10 դաս. | 300 | — | | |
| Պ. Ռոմանոսեանի վասն ստորին Նախակրթարանի Հայոց և Ռուսաց լեզուի . 23 դաս. | 450 | — | | |
| 3. Վարձ երից վերակացուաց . . . . | — | — | 1000 | — |
| 4. Թոշակ մատենադարանապետի . . . | — | — | 150 | — |
| 5. Վարձ ծառայից և պահապանի . . . | — | — | 425 | — |
| 6. Ծախք ուսումնականք . . . . | — | — | 211 | 75 |
| 7. Ծախք տնտեսականք . . . . | — | — | 745 | 85 |
| 8. Ծախք նորոգութեանց ի մէջ տան Դպրանոցի և ի բնակարանի Տեսչին . . . . | — | — | 353 | 25 |
| 9. Վարձատրութիւն Ռոմանոսեան ուսուցչի վասն պէս պէս ծառայութեանց նորին ի դպրա. վարձ բնակարանի Տեսչի . . . . . | 100 | — | 175 | — |
| 10. Ծախք խորհրդարանի Հոգաբարձուաց . . | 75 | | | |
| Թոշակ գործավարի Տէր-Խաչատուր ա. քահանայի Զարիֆեան . . . . . | 500 | | | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Վարձ պահպանութեան տոմսակաց Դպրանոցի. | 14 | 70 | | |
| Ծախք պահպանութեան տան Դպրա. ի հրկիզութենէ . . . . . . | 61 | 77 | 576 | 47 |
| Գումար տարեկան ծախուց . | 18437 | 32 | | |
| Մնացորդ ի տարեւորական արդեանց և ծախուց, որ ըստ կարգաւորութեան խորհրդոյ Հոգաբարձուաց ի 29 Յունուարի 1891 ամի որոշեալ է գործածել ի կառուցումն նորոյ շինուածոյ . . | 12533 | 38 | | |
| Գումար . . | — | — | 30970 | 70 |

## ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ԿՈՆԴԱԿ.

—

*Անցեալ տարուայ նոյեմբերի 20-ին Կ. Պոլսում և բոլոր տաճկական գաւառների ամեն հայ եկեղեցիներում կարդացուել է Խորէն Աշըգեան Ամենապատիւ Պատրիարքի՝ իւր տեսակին մէջ նշանաւոր կոնդակը, որն և արտատպում ենք ամբողջութեամբ։*

—

**ԽՈՐԷՆ ԾԱՌԱՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՒ ՇՆՈՐՀԻՒ ՍՈՒՐԲ ՀՈԳՒՈՅՆ ՊԱՏՐԻԱՐՔ Կ. ՊՈԼՍՈՅ ԵՒ ՎԵՐԱՏԵՍՈՒՉ ԱՄԵՆԱՅՆ ՎԻՃԱԿԱՑ Ս. ԵԿԵՂԵՑԵԱՑ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐ Ի ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻՍ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ ՕՍՄ. ՊԵՏՈՒԹԵԱՆ, ԳԵՐ. Ս.** *եպիսկոպոսաց, բարեխնամ առաջնորդաց և վանահարց, Պատրիարքական և առաջնորդական փոխանորդաց, բարեխրատ քարոզչաց, մաքրակենցաղ աւագերիցանց, բարեկրօն քահանայից, շնորհունակ սարկաւագաց, քաղցրանուագ դպրաց, բարենախանձ դաստիարակաց, բարեջան հոգաբարձութեանց և Թաղ. Խորհրդոց, աստուածասէր վաճառականաց, բարեպաշտօն արհեստաւորաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, երիտասարդաց և կուսանաց, մեծաց և փոքունց և այլ ամենայն չափու հասակի ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր հաւատացեալ որդւոց մօրս լուսոյ Կաթողիկէ և առաքելական Ս. եկեղեցւոյս Հայաստանեայց՝ ողջոյն քրիստոսաւանդ սիրոյ և օրհնութիւն աստուածային՝ կալ մնալ միշտ պաշտպանեալ ընդ հովանեաւ և ամենախնամ աջոյն բարձրելոյ Հօր, քրիստոնավայել կենօք սրբութեան, պարկեշտ և զգաստ կենցաղավարութեամբ գնալով յօրէնս և ի պատուիրանս Տեառն մինչև ի կէտ կոչման. ամէն։*

*Ընդ քրիստոսաւանդ ողջունիս և օրհնութեանս, գիտութիւն լիցի ձեզ սիրելի որդեակք իմ ի Քրիստոս թէ՝*

Մեր ազգն և եկեղեցին դարաւոր արկածից յեղաշրջութեանց ներքև անընդհատ ժամանակաւ յանհնարինս տառապելէ յետոյ՝ Նախախնամութիւն Աստուածային իւր երկրպագելի ողորմութեան և գթութեան շնորհիւ հաճեցաւ պահպանել զայն և յանդորր հանել ընդ հզօր պաշտպանութեամբ տիեզերակալ Թագաւորութեան մեծի Տանն Օսմանայ։ Մեծն աշխարհակալ և տիեզերայաղթ՝ որ ի ձեռաց Նախախնամութեան աւանդ ընկալաւ այս վշտաչարչար ժողովուրդ՝ զսա խնամով պահելու և մշակելու համար համարձակութիւն պարգևեց նմա և արտօնեց որ պաշտէ իւր կրօնքը, վարուի իւր ծիսովը, գործածէ իւր լեզուն, ի մի բան՝ ազգային նկարագրի յատկութիւն անփոփոխ պահելու և զարգանալու բարի բարի միջոցները համարձակ գործադրէ։ Եւ որպէս զի այս արտօնած շնորհքներն արդիւնաւոր կերպիւ ի գործ դրուին՝ հրամայուելով ի ձեռն հոգևոր իշխանութեան, ազգին պատրիարքութիւնը՝ որ ազգին հոգևոր և կրօնական կեանքին անընդմիջական վերակացութիւնն է, իւր հովանաւորութեան ներքև առաւ և հաստատեց, ընդարձակածաւալ պետութեան այլ և այլ կողմեր տարածեալ և սփռեալ ժողովուրդն հայոց ժողովեց այս հոգևոր իշխանութեան դաւազանի ներքև, բաշխեց այս իշխանութեան վարչութեան մը պատշաճեալ բոլոր սեպհականութիւնը, հրամայեց զսա միայն ճանաչել գլուխ և պատասխանատու ի վերայ համօրէն հոգևորականաց և աշխարհականաց հայ ազգին, և հաճեցաւ ի փոխարէն իւր շնաշխարհիկ և վեհանձն ողորմութեան՝ ի ձեռն այս հոգևոր իշխանութեան՝ ընդունիլ հնազանդութեան, հպատակութեան և հաւատարիմ ծառայութեան շնորհապարտ ընծայաբերութիւն ի կողմանէ ազգին։

Հայ ազգն անշուշտ ի վաղուց ժամանակաց անտի ընդ անկշռելի շնորհս Օսմանեան պետութեան երախտագիտութեամբ զարմացեալ հպատակութեան և հաւատարմութեան պարտուց հատուցման հետ գոհութեամբ և ուրախութեամբ սրտի կաղօթէ միշտ առ Աստուած վասն յաջողութեան և խաղաղութեան աշխարհին և վասն անսասան պահպանման օսմանեան փառապանծ գահուն։

Պատմական և դրական այնքան ապացոյցներու առջև, սիրելիք, որք կը հաստատեն մէկ կողմանէ այս բարեխնամ Թագաւորութեան բազմապատիկ շնորհներն և վեհանձնութիւններն, և միւս կողմանէ հայ ազգին հաւատարմութեան անեղծանելի յատկութիւնը, որչափ տրտմառիթ էր վերջին ատեններս մերայնոց մի քանի անխելահասից վերայ տեսնուիլն մի այնպիսի վարմունք, որ գլխովին հակապատկեր էին անշուշտ ազգին ընդհանրական ոգւոյն և բնաւորութեան իսկականին։

Կը յիշէք անշուշտ, երբ անցեալ տարի նոյն անվայել գործոց յանդըգնողք արդարութեան ձեռքն ինկան, և ծանրապէս պիտի կրէին օրինաց

խաղաղութիւնը, և ահա Նորին Կայսերական Վեհափառութիւն Իւր առ հպատակ հայ ազգն ունեցած անյեղլի սիրոյն և անգին համակրանաց նոր ապացոյց մը եւս տալու համար գթաց յանցաւորներուն վրայ և ներեց նոցա պատիժն Իւր մեծ հոգւոյն յատուկ վեհանձն և գերազանցապէս ակնածելի անյիշաչարութեամբ, որով բազմաթիւ հարց, մարց, եղբարց, բարեկամաց և ազգականաց ողբ, լաց և արիւնարտասուք դադրեցան։ Անգին էր կայսերական այս գթութիւն, անբաղդատելի էր այս առթիւ հայ ազգին հանրութեան վրայ ունեցած սիրոյն աստիճանը, ուստի յայնժամ ծանուցանելով ամեն կողմ այս շնորհին մեծութիւնը, յատուկ հեռագրովք հրամայեցաք եկեղեցեաց մէջ աղօթքներ առ Աստուած, վասն բարեբաստիկ կենդանութեան մեր ամենասիրելի Վեհապետին, և անմոռաց յիշմամբ երախտագէտ մնալ առաջի մեծութեան կայսերական բարձր շնորհին։

Յետ այսպիսի ծանրակշիռ իրողութեան, սիրելի որդեակք իմ ի Քրիստոս, տարակոյս չկայ թէ արժան էր խրատուիլ զգաստ և արթուն գտնուիլ յանդիման որ և է անարժան թելադրութեանց, որ ազգին պատուոյն և հաստատեալ շահերուն կը սպառնան, և բացարձակապէս հրաժարիլ այնպիսի անվայել գործերէ. սակայն ցաւով սրտի կը լսուի, որ մի քանի անձինք դարձեալ նոյն վարմանց մէջ գտնուիլ կը յանդգնին, չեմ կրնար ըմբռնել թէ այդպիսիք ի՞նչպէս չեն զգար յանդգնութեան ծանրութիւնը, որով ոչ միայն զբարկութիւն Աստուծոյ և զդատաստան կը հրաւիրեն իրենց վրայ անսաստելով աստուածային յայտնի պատուիրանաց, որ կը հրամայեն հաւատարմութիւն անկեղծ և հպատակութիւն կատարեալ առաջի մարմնաւոր իշխանութեան, այլ և ազգին հանրութեան արդար սրտմտութիւնը, որ սկզբամբ հաւատարմութեան պարտուց կատարման մէջ կը փնտռէ իւր ազգային խաղաղութիւնը և անդորրութիւնը, և ոչ թէ անարժան և անհետևական այնպիսի վարմանց մէջ, որ ազգովին զբաղմունք և սրտի ցաւ լինելէ և իրենց վրայ յայտնի բարկութիւն աստուածային և խստութիւն օրինաւոր իշխանութեան հրաւիրելէ զատ՝ ուրիշ բնաւ հետևանք չունի։ Մինչև ցե՞րբ, սիրելիք, մինչև ե՞րբ այս յանդգնութիւն, մինչև ցե՞րբ իրենցմով պիտի զբաղի Պատրիարքարանս, փոխանակ ներքին բարեկարգութեան և կրթական յառաջադիմութեան կարևոր խնդրովք զբաղելու։ Ընդէ՞ր չեն յիշեր Ս. առաքելոյն յայտնի պատուիրանը որ կըսէ. «Ամենայն անձն որ ընդ իշխանութեամբ է, ի հնազանդութեան կացցէ, քանզի ոչ ուստեք է իշխանութիւն, եթէ ոչ յԱստուծոյ, և որք ենն՝ յԱստուծոյ կարգեալ են։ Այսուհետև որ հակառակ կայ իշխանութեան, Աստուծոյ հրամանին հակառակ կայ, և որք հակառակն կան՝ անձանց դատաստանս ընդունին . . . զի Աստուծոյ պաշտօնեայ է քեզ ի բարիս . . . կի ոչ եթէ վայրապար ածեալ է սուսեր ընդ մէջ, Աստուծոյ սպասաւոր է վրէժխնդիր

*ի բարկութիւն այնմ, որ զչարն գործիցէ։ Վասն որոյ հարկ է հնազանդիլ՝ ոչ միայն վասն բարկութեանն, այլ և վասն խղճի մտացն» Հռոմ. ԺԳ. 1—6։ Առաքելական այս պատուիրանը, մտածեցէք սիրելիք, թէ ինչ ծանրակշիռ սպառնալից ձևով կը բացատրուի, իշխանութեան անհնազանդը, կըսէ Ս. առաքեալը, ուղղակի Աստուծոյ անհնազանդ և հետևապէս պատժոյ արժանի է, հարկ է հնազանդիլ և հպատակիլ իշխանութեան՝ ոչ միայն վասն զի կրնայ պատժել արդարապէս, այլ և սրտի անկեղծ և կատարեալ հաւանութեամբ.—ոչ միայն վասն բարկութեան այլ և վասն խղճի մտացն. յայտնի է ուրեմն թէ տարրական այսպիսի պատուիրանի և ազգին իսկական օգտին հակառակ անվայել վարմունքներ բացարձակապէս դատապարտելի են։*

*Բայց ցաւալի է, որ այս յայտնի ճշմարտութեանց և ազգին յայտնի շահուց հակառակ դուրսերն ոմանք բացէն այլ և այլ թերթեր և յօդուածներ կը հրատարակեն և կաշխատին ներսէն իրենց անձնական շահուն գործիքներ ճարել, որով կարգ մը անխոհեմներ միամտաբար խաբուելով կը մղուին գործակցիլ այնպիսեաց, որ ազգին համար աշխատիլ կը ձեւանան, այլ իրականը բոլորովին ընդհակառակն է։ Եթէ այսպիսի անխոհեմութեան թիւն և օրինակը շատնայ, տարակոյս չկայ որ ազգը պիտի տուժէ, յայնժամ փորձով պիտի տեսնենք վիճակնիս և պիտի զարմանանք այն դարուն առաքինութեան վրայ՝ յորում մեր հայրերն ի հնումն ազգին և եկեղեցւոյ պահպանման համար հարկ եղած խոհեմութիւնն և իմաստութիւնը ունեցած, և ընդհակառակն պիտի ամաչեմք այս դարուս լուսաւորութեան վրայ՝ յորում լուսաւոր միտք և բազմածիւղ գիտութեանց արդիւնքովն պիտի կորսնցնեմք նախկին ժամանակաց մէջ մեր հայրերուն շահածները։*

*Ստոյգ է որ մի քանի անխելահասներու գործը ընդհանուր ազգին անմեղութեան համբաւը խնդրոյ տակ չկրնար դնել և մեր Օգոստափառ Վեհապետին հանրութեան վրայ ունեցած վստահութեան և համակրանաց աստիճանը մասնաւոր մարդոց երեսէն բնաւ չպակսիր, բայց սակայն այս ալ ստոյգ է, որ պարզ և միամիտ հասարակութեան առջև վտանգին ծուղակը միշտ լարուած մնալով՝ հետզհետէ գայթակղութիւն և գլորմունք կը յաճախեն, բազումք տարապարտուց կը վնասուին, ազգային վարչութեան գործելոյ շրջանակը կը նեղնայ, ընդհանրական խնդիրները երեսի վրայ մնալով, մասնաւորներով զբաղեալ կը պաշարուին, ի մի բան՝ թէև յանցաւորը մարդիկ ոմանք կըլլան, բայց նոցա յանցանաց և սխալանաց հետևանքը ազգին յառաջադիմական ընթացից վրայ ծանրապէս կազդէ։*

*Ուստի կաղաչեմք սիրովն Յիսուսի Քրիստոսի, և կը յորդորեմ զամենեսեան, որ զգոյշ կենան և զմիմեանս զգուշացնեն։ Առաջնորդաց վրայ*

պարտք կը դնեմ՝ որ խրատեն և զգուշացնեն իրենց հօտն, քահանայից՝ որ խրատեն իրենց ժողովուրդն, ծնողաց՝ որ հսկեն իրենց զաւակաց ընթացքին վրայ, և առհասարակ բոլոր ժողովրդեան կը պատուիրեմ՝ որ մեր այս հայրական խրատուց ծանրակշռութիւնն ըմբռնեն, և զգուշանան։ Կը պատուիրեմ, այն ինչպէս երբեմն Ս. առաքեալն Պօղոս Թեսաղոնիկեցի հաւատացելոց պատուիրեց յասելն «Լսեմ զոմանց ի ձէնջ թէ ստահակութեամբ գնան, գործ ինչ ոչ գործեն, այլ յուլացեալք հետաքրքիր շրջին . . . եթէ ոք ոչ հնազանդեսցի բանիս մերոյ թղթովդ այդուիկ՝ զուք նշանակեսջիք զնա, և մի խառնակիցիք ընդ նմա զի պատկառեսցի» Բ. Թես. 3. 11. 14.

Ս. առաքելոյն այս խօսքին համեմատ կը պատուիրեմ, սիրելիք, որ այսպիսի ստահակներէ զգուշանաք, և զգուշացնէք, և եթէ չեն զգուշանար, դուք մի հետեւիք իրենց, հեռացէք և մի գործակցիք, մի խառնակիջիք ընդ նոսա, կը պատուիրեմ որ հպատակութեան ու հաւատարմութեան պարտուց կարգի և կանոնի հակառակ վարմանց մէջ երբէք չը գտնուիք. այլ դրական ու իրական կեանքի պարկեշտ սահմաններով աստուածպաշտութեամբ, բարեկրթութեամբ և ամենայն քրիստոնէական առաքինութեամբ, ձեր միտքը, սիրտը և հոգին զարդարէք։

Խաղաղութեանց պարգեւողն Քրիստոս տացէ ձեզ խաղաղութիւն յամենայն ժամ և յամենայն իրս։

Ողջ լերուք

(Կնիք Ս. Պատրիարք Հօր)

Տուեալ ի Պատրիարքարանի
Կ. Պոլսոյ յեօթն ամսեանն
Նոյեմբերի Ցամի շնորհաց
1891 և Հայոց ՌՅԽ
Թիւ 155

---

Կ. Պոլսոյ գրումեն արտասահմանի թերթերին յունվ. 5 թուով հետեւեալները.

Շարականի և ուրիշ եկեղեցական մի քանի գիրքերու տպագրութիւնը արգելուեցաւ Վարչութենէն, որովհետև կառավարութիւնը կը պահանջէ որ այդ գիրքերու մէջէն վնասակար բառեր վերցուին և այնպէս տպագրուին։

—Անցեալ շաբթու Իւսկիւտարի Ս. Խաչ եկեղեցու և վարժա-

ի բարկութիւն այնմ, որ զչարն գործիցէ։ Վասն որոյ հարկ է հնազանդիլ՝ ոչ միայն վասն բարկութեանն, այլ և վասն խղճի մտացն» Հռոմ. ԺԳ. 1—6։ Առաքելական այս պատուիրանը, մտածեցէք սիրելիք, թէ ինչ ծանրակշիռ սպառնալից ձևով կը բացատրուի, իշխանութեան անհնազանդը կըսէ Ս. առաքեալը, ուղղակի Աստուծոյ անհնազանդ և հետևապէս պատժոյ արժանի է, հարկ է հնազանդիլ և հպատակիլ իշխանութեան՝ ոչ միայն վասն զի կրնայ պատժել արդարապէս, այլ և սրտի անկեղծ և կատարեալ հաւանութեամբ.—ոչ միայն վասն բարկութեան այլ և վասն խղճի մտացն. յայտնի է ուրեմն թէ տարրական այսպիսի պատուիրանի և ազգին իսկական օգտին հակառակ անվայել վարմունքներ բացարձակապէս դատապարտելի են։

Բայց ցաւալի է, որ այս յայտնի ճշմարտութեանց և ազգին յայտնի շահուց հակառակ դուրսերն ոմանք բացէն այլ և այլ թերթեր և յօդուածներ կը հրատարակեն և կաշխատին ներսէն իրենց անձնական շահուն գործիքներ ճարել, որով կարգ մը անխոհեմներ միամտաբար խաբուելով կը մղուին գործակցիլ այնպիսեաց, որ ազգին համար աշխատիլ կը ձևանան, այլ իրականը բոլորովին ընդհակառակն է։ Եթէ այսպիսի անխոհեմութեան թիւն և օրինակը շատնայ, տարակոյս չկայ որ ազգը պիտի տուժէ, յայնժամ փորձով պիտի տեսնենք վիճակնիս և պիտի զարմանանք այն դարուն առաքինութեան վրայ՝ յորում մեր հայրերն ի հնումն ազգին և եկեղեցւոյ պահպանման համար հարկ եղած խոհեմութիւնն և իմաստութիւնը ունեցած, և ընդհակառակն պիտի ամաչեմք այս դարուս լուսաւորութեան վրայ՝ յորում լուսաւոր միտք և բազմածիւղ գիտութեանց արդիւնքովն պիտի կորսնցնեմք նախկին ժամանակաց մէջ մեր հայրերուն շահածները։

Ստոյգ է որ մի քանի անխելահասներու գործը ընդհանուր ազգին անմեղութեան համբաւը խնդրոյ տակ չկրնար դնել և մեր Օգոստափառ Վեհապետին հանրութեան վրայ ունեցած վստահութեան և համակրանաց աստիճանը մասնաւոր մարդոց երեսէն բնաւ չպակսիր, բայց սակայն այս ալ ստոյգ է, որ պարզ և միամիտ հասարակութեան առջև վտանգին ծուղակը միշտ լարուած մնալով՝ հետզհետէ գայթակղութիւն և գլորմունք կը յաճախեն, բազումք տարապարտուց կը վնասուին, ազգային վարչութեան գործելոյ շրջանակը կը նեղնայ, ընդհանրական խնդիրները երեսի վրայ մնալով, մասնաւորներով զբաղեալ կը պաշարուին, ի մի բան՝ թէև յանցաւորը մարդիկ ոմանք կըլլան, բայց նոցա յանցանաց և սխալանաց հետևանքը ազգին յառաջադիմական ընթացից վրայ ծանրապէս կազդէ։

Ուստի կաղաչեմք սիրովն Յիսուսի Քրիստոսի, և կը յորդորեմ զամենեսեան, որ զգոյշ կենան և զմիմեանս զգուշացնեն։ Առաջնորդաց վրայ

պարտք կը դնեմ՝ որ խրատեն և զգուշացնեն իրենց հօտն, քահանայից՝ որ խրատեն իրենց ժողովուրդն, ծնողաց՝ որ հսկեն իրենց զաւակաց ընթացքին վրայ, և առհասարակ բոլոր ժողովրդեան կը պատուիրեմ՝ որ մեր այս հայրական խրատուց ծանրակշռութիւնն ըմբռնեն, և զգուշանան։ Կը պատուիրեմ, այն ինչպէս երբեմն Ս. առաքեալն Պօղոս Թեսաղոնիկեցի հաւատացելոց պատուիրեց յասելն «Լսեմ զոմանց ի ձէնջ թէ ստահակութեամբ գնան, գործ ինչ ոչ գործեն, այլ յուլացեալք հետաքրքիր շրջին... եթէ ոք ոչ հնազանդեսցի բանիս մերոյ թղթովդ այդուիկ՝ զուք նշանակեսջիք զնա, և մի խառնակիջիք ընդ նմա զի պատկառեսցի» Բ. Թես. 3. 11. 14։

Ս. առաքելոյն այս խօսքին համեմատ կը պատուիրեմ, սիրելիք, որ այսպիսի ստահակներէ զգուշանաք, և զգուշացնէք, և եթէ չեն զգուշանար, դուք մի՛ հետևիք իրենց, հեռացէք և մի՛ գործակցիք, մի՛ խառնակիջիք ընդ նոսա, կը պատուիրեմ որ հպատակութեան ու հաւատարմութեան պարտուց կարգի և կանոնի հակառակ վարմանց մէջ երբէք չը գտնուիք. այլ դրական ու իրական կեանքի պարկեշտ սահմաններով աստուածպաշտութեամբ, բարեկրթութեամբ և ամենայն քրիստոնէական առաքինութեամբ, ձեր միտքը, սիրտը և հոգին զարդարէք։

Խաղաղութեանց պարգևողն Քրիստոս տացէ ձեզ խաղաղութիւն յամենայն ժամ և յամենայն իրս։

Ողջ լերուք

(Կնիք Ս. Պատրիարք Հօր)

Տուեալ ի Պատրիարքարանի
Կ. Պոլսոյ յեօթն ամսեանն
Նոյեմբերի Ցամի շնորհաց
1891 և Հայոց ՌՅԽ
Թիւ 155

---

Կ. Պոլսոյ գրումեն արտասահմանի թերթերին յուն. 5 թուով հետևեալները.

Շարականի և ուրիշ եկեղեցական մի քանի գրքերու տպագրութիւնը արգելուեցաւ Վարչութենէն, որովհետև կառավարութիւնը կը պահանջէ որ այդ գրքերու մէջէն վնասակար բառեր վերցուին և այնպէս տպագրուին։

—Անցեալ շաբթու Իւսկիւտարի Ս. Խաչ եկեղեցու և վարժա-

րանի հիմնադիր Յակոբ Պատրիարքի մահուան տարեդարձի առիթով հոգեհանգստի պաշտօն պիտի կատարէր Թաղին քարոզիչ Տէր Գրիգորիս եպիսկոպոս Ալէաթճեան, բայց նախապէս ոստիկանատունէ հասած մի հրամանագիր կարգիլէ այդ կրօնական արարողութիւն։

(«Արձագանք»)։

—

ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՐՔԵՐ. Մինչև վերջին ժամանակներս Թիւրքիայի սահմաններում Հայոց եկեղեցական բոլոր գրքերը տպագրւում էին Կ. Պոլսի Հայոց պատրիարքարանի և կրօնական ժողովի կարգադրութեամբ և թոյլտուութեամբ։ Այս հիմնարկութիւններին էր պատկանում միակ իրաւունքը տպագրութեան և դրա պատասխանատուութիւնը։ Թիւրքաց կառավարութիւնը մի քանի անգամ փորձեց այդ տեսակ գրքերի տպագրութիւնը ենթարկել իր գրաքննութեան, սակայն նախկին պատրիարքարանները ցոյց տուեցին, որ ոչ մի իրաւունք չունեն Հայոց եկեղեցու սեփական գրքերը, որոնց բովանդակութիւնը նոյն եկեղեցու աղօթքները, շարականները, դաւանութիւնները և ծիսակատարութիւններն են, ենթարկել մի այնպիսի հաստատութեան քննութեան, որի շրջանից դուրս է Հայոց եկեղեցու ներքին կազմութեան և դաւանութեան խնդիրը։ Այդ դրութեամբ էլ անցան տարիներ։

Այժմ Թիւրքաց կառավարութիւնը նորից յարուցել է այդ խնդիրը։ Նա պահանջել է, որ սրանից յետոյ տպագրուելի եկեղեցական գրքերի միջից հանուեն այնպիսի խօսքեր, անուններ և նոյն իսկ ամբողջ գլուխներ, որոնք իբրև թէ կառավարչական հայեացքների դէմ են։

Կ. Պոլսի այժմեան պատրիարքը և պատրիարքարանն անընդունակ գտնուեցան՝ պաշտպանելու եկեղեցական գրքերի տպագրութեան գործը և պատրիարքարանի ու կրօնական ժողովի իրաւունքները։ Դրա հակառակ, այժմեան պատրիարքարանը, ինչպէս հաղորդում են տրտասահմանի Հայոց լրագիրները, դիմել է հետևեալ բաւական աննպատակ միջոցին,—սրանից յետոյ եկեղեցական գրքեր չը տպագրել։

Ուրեմն չը տպագրելով եկեղեցական գրքեր, պատրիարքարանը ստիպուած կը լինի ոչինչ փոփոխութիւն չը մտցնել այդ գրքերի մէջ։ Բայց դրա հետ միասին մի հարց է ծագում․—ո՞րտեղից պէտք է նրանից յետոյ եկեղեցիները և ցանկացողները ստանան այդ գըրքերը, քանի որ նոր տպագրութիւն չը լինելու պատճառով նրանք կը սպառուեն։ Ահա մի հարց, որի պատասխանը պէտք է որոնել և գտնել։

(«Մշակ»)։

—

«ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՈՒՂԵՐՁ․ Վեհ․ Սուլթանին կողմէ Ամանորի առթիւ Ազգ․ Պատրիարքարանի շնորհեալ չորս հարիւր ոսկւոյ դրամական պարգևին համար Ամեն․ Ս․ Պատրիարք Հայրը շնորհակալութեան և երախտագիտութեան ուղերձ մը պիտի մատուցանէ յոտս գահոյից Ն․ Կ․ Վեհափառութեան»։

(«Արևելք» Թ․ 2383)։

—

«Արարատի» Նախընթաց համարում տպուած կանոնները՝ թեմական Պատգամաւորների ընտրութեան վերաբերեալ՝ պարտաւոր չեն ընտրողների համար։ Իւրաքանչիւր Առաջնորդ տէր է իւր թեմում՝ ընտրութիւնները ղեկավարելու, տալով առանձին հրահանգներ և կանոններ, այն պայմանով միայն, որ այդ կանոնները չը մեղանչեն ընտրողական ընդհանուր սկզբունքների դէմ։ Օրինակի համար Թիֆլիսի Ս․ Առաջնորդը, ինչպէս կարդում ենք «Մշակ»-ում (Թ․ 6) տուել է քահանաներին առանձին հրահանգներ ընտրութիւնների համար։ Այս դէպքում ոչ մի կարծիք չը կայ, որ օրինական ուժ ունենալու են Առաջնորդի այդ հրահանգները և ո՛չ թէ «Արարատ»-ում մեր տպածը։ Մինչդեռ ուրիշ տեղում, Երևանում, պէտք են եկել «Արարատ»-ում տպուած կանոնները, տեղական Առաջնորդի կողմից չը լինելով առանձին մանրամասն հրահանգութիւն։

Մենք կատարելապէս համաձայն ենք «Մշակ»-ի հետ, որ Թիֆլիսի թեմական Առաջնորդի տուած հրահանգների 15-դ յօդուածը անհամեմատ արդարացի է քան «Արարատ»-ում տպուած կա-

նոնների 10-դ յօդուածը, որով պահանջւում է, որ ընտրելին լինի անպատճառ նոյն եկեղեցու ծխականն, ուր կատարւում են ընտրութիւնները։ Մինչդեռ Թիֆլիսի թեմ. Առաջնորդի հրահանգների 15-դ յօդուածը պահանջում է. «Եթէ ընտրողները չեն գտնում իրանց ծխականների մէջ յարմարաւոր անձինք երեսփոխանական պաշտօնի համար, այդ դէպքում իրաւունք ունեն ընտրել այլ եկեղեցու ծխականներից» («Մշակ» № 6)։ Եւ այս անհամեմատ աւելի համապատասխան է ազատ ընտրողական ոգուն։ Բայց մենք նոյն «Մշակ»-ի հետ անարդարացի ենք գտնում Թիֆլ. Առաջնորդի նոր հրահանգների 14-դ յօդուածը, որ ասում է՝ «ընտրութիւնը պիտի կատարել Թերթիկներով նախագահի ստորագրութեամբ և Թուահամարով և պիտի բաժանուեն ընտրողներին նախագահից որոշած երկու գրագէտ անձանց ձեռքով։ Գրագէտ ընտրողներն իրանք պէտք է նշանակեն Թերթիկների վրայ իրանց ցանկացած երեք երեսփոխանացուների անունները, իսկ անգրագէտները պէտք է գրել տան միայն ընտրելները բաժանող անձանց»։

Մենք չենք հասկանում ինչի՞ համար նախագահից պիտի նշանակուեն գրագէտներ անգրագէտների Թերթիկները գրելու համար։ Չէ՞ որ կարող է պատահել, որ նախագահից ընտրուած այդ երկու գրագէտ գրագիրներին կարող են հաւատ չընծայել անգրագէտ ընտրողները, որոնք հնարաւորութիւն և միջոց չունին իմանալու թէ այդ երկու գրողները ճշդութեամբ արդեօք գրում են ընտրողի ուզած մարդկանց անունները, թէ այլ անուններ են գրում։ Մեր կարծիքով իւրաքանչիւր անգրագէտ ընտրող պէտք է կատարեալ իրաւունք ունենայ դիմել անձամբ այն գրագէտին, որին ինքը հաւատում է, որին ուրեմն և կարող է խնդրել գրել իւր Թերթիկը։ Իսկ եթէ անհրաժեշտ դատուի ունենալ երկու գրող անգրագէտների համար, այդ երկուսը պէտք է ընտրուած լինին բոլոր ընտրողների քուէարկութեամբ (մեծամասնութեամբ ձայների) և ոչ թէ նշանակուած լինին նախագահից։ Այլապէս ասած, այդ երկու գրողը պէտք է վայելեն ընտրողների մեծամասնութեան հաւատը։ Շատ քիչ է միմիայն նախագահից նշանակուած լինելը։ Ցուսանք, որ զանազան տարաձայնութիւնների և իրաւա-

ցի դժգոհութեանց առաջն առնելու համար, այդ 14-դ յօդուածը մինչև ընտրութեանց օրը բարեփոխուած կը լինի։

—

Մի երկու շաբաթ կայ արդէն, որ ժամանել է Էջմիածին դրսից եկող Թեմական առաջին Պատգամաւորը։ Պարսկաստան—Հնդկաստանի Թեմի Առաջնորդ Գեր. Եսայի եպիսկոպոսը իր փոխանակ ուղարկել է իբրև վերոյիշեալ Թեմի հոգևոր պատգամաւոր Արժ. Խաչատուր վարդապետ Կարապետեան Ջուղայեցուն։ Արժ. Հայրը արդէն հասակն առած մի պատկառելի ծերունի է, մօտ 60 տարեկան։ Առաջին անգամն է, որ լինում է Էջմիածնում։ Եղել է Հնդկաստան և Բիրմա, Ճապոն, և Չինաստան, երկար տարիներ կառավարել է Պարսկա-Հնդկական Թեմը Առաջնորդների բացակայութեան ժամանակ։ Խօսք չը կայ, որ լաւ տեղեակ է պարսկական հայ գաղթականութեան գործերին և հետաքրքրական տեղեկութեանց անսպառ աղբիւր։

—

Մի քանի հետաքրքիր հարցասէրների բաւարարութիւն տալու համար հաղորդում ենք, որ «Արարատ»-ում տպուող «Խորենացու Ուսումնասիրութիւն» յօդուածները Միաբան ստորագրութեամբ չեն վերջացել, այլ միայն ընդհատուել են, բարեշնորհ Միաբանի շատ զբաղուած լինելուն պատճառով։

—

Գէորգեան ճեմարանի հաշուէտուութեան մէջ երևի մոռացմամբ բաց է թողուած Արժ. Մակար Ծ. վարդապետի անունը։ Արժ. Հայր-սուրբը անցեալ ուսումնական տարուայ վերջին հրաւիրուեց իբրև կրօնուսոյց ճեմարանի, փոխարինելով Սահակ վարդապետ Բաղդասարեանցին։ Շաբաթական պարապում էր 3 ժամ, մինչև քննութիւնները ընդամենն 24 ժամ։ Այս տարի էլ Արժ. Հայր-սուրբը մնում է իր ստանձնած պաշտօնում։

—

Տպելով Նոր-Նախիջևանի Թեմական Դպրանոցի տասնամեայ հաշիւը, հրաւիրում ենք մեր պարբերական մամուլի ուշադրութիւնը այդ դպրանոցի կազմակերպութեան, ուղղութեան և ձգտումնե-

րի վրայ։ Պարբերական մամուլի լուրջ քննադատական հայեացքները կարող են մեծապէս նպաստել Դպրանոցին՝ կարելի եղածին չափ աւելի օգտակար լինելու Ռուսաստանի հայ գաղթականութեանը։

—

Յունուարի 6-ին Թիֆլիսում պատահած մեծ հասարակական դժբաղդութիւնը արդէն յայտնի է ամենքին։ Օրաթերթերը հետըզհետէ տալիս են բոլոր ցաւալի մանրամասնութիւնները։ Ջրօրհնէքի համար Կուրի մի ճիւղի վրայ շինուած կամուրջը կործանուելով ջուրն են թափուել հարիւրաւոր մարդիկ, որոնցից 34-ի խեղդուած դիակները գտնուել են։ Մի քանի տասնեակ հոգի էլ ծանր վիրաւորուած կամ հիւանդացած են։ Հիւանդներից արդէն մի 5—10 հոգի վախճանուել են։ Աւելորդ է ասել, որ ամբողջ քաղաքը, և այժմ նաև գաւառները, չափազանց յուզուած են։ Պատահած դժբաղդութեան մասին շշուկ տարածուեց Էջմիածնում նոյն իսկ յունուարի 6-ի երեկոյեան, բայց պաշտօնական ոչ մի տեղեկութիւն չը կար։ Տ. Տեղակալը երկրորդ օրն առաւօտեան հարկ համարեց պաշտօնապէս տեղեկութիւն պահանջել Թիֆլիսի կոնսիստորիայից։ Վերջապէս ստացուեց Թիֆլիսի Առաջնորդ Գեր. Մամբրէ Եպիսկոպոսի պատասխանը, որով հաստատւում էր պատահած դժբաղդութիւնը և ասւում էր, որ կամուրջը խախտուել է յանկարծակի յորդացած ջրից և հիւսիսային սուր քամուց։ Հեռագրի մէջ խոստացւում էր մանրամասնութիւնները հաղորդել առանձին թղթով։ Մինչդեռ հետըզհետէ հասնող չափազանց տխուր լուրերը անորոշութեան մէջ էին թողնում Հոգևոր Բարձրագոյն Վարչութիւնը և Վանքիս Միաբանութիւնը։ Լրագրերից երևում է, որ մարմնաւոր իշխանութիւնը արդէն բացել է քննութիւն դժբաղդութեան պատճառները գտնելու համար։ Եւ քանի որ այդ կործանուած կամուրջը շինուած է Թիֆլիսի Հայ Հոգևոր Իշխանութեան ձեռքով և կրօնական հանդիսի համար, ուստի և պարզ է, որ պատահած դժբաղդութեան պատասխանատուութիւնը մասնաւորապէս ծանրանում է Հոգևոր Իշխանութեան վրայ, այս իսկ պատճառով հարկ դատուեց Հոգևոր Բարձ-

րագոյն Իշխանութեան կողմից նշանակել առանձին քննութիւն և Քննչական Մասնաժողովը՝ նշանակուած է Էջմիածնից՝ արդէն հասել է Թիֆլիս։ Այդ Մասնաժողովի Անդամներն են՝ Նախագահ Գեր. Գրիգորիս Եպիսկոպոս Աղաւնեան՝ Սինօդական Անդամ, Արժ. Եփրեմ վարդապետ Սուքիասեան և իրաւաբան պ. Ց. Սաղաթէլեան, օգնական Ցեսչի Ճեմարանի։ Սպասենք քննութեան ելքին, հաւատի լինելով որ յանցաւորները առանց խտրութեան պաշտօնի և աստիճանի կը պատժուին խստութեամբ և անաչառութեամբ։

Սակայն չէ կարելի այժմեանից իսկ չը նկատել պաշտօնական նամակներից յայտնուած այն աններելի և անարդարանալի իրողութիւնը, որ տասնեակ հազար մարդկանց խուռն անցուդարձի համար նշանակուած այդ փայտեայ կամուրջը շինուած է եղել առանց ճարտարապետի և առանց յատակագծի։

—

Մեր ընթերցողների առանձին ուշադրութիւնն ենք հրաւիրում այս համարում տպուած Ներսիսեան Դպրանոցի Հոգաբարձութեան վերաբերեալ օրագրութեան վրայ։ «Արարատ»-ի նախընթաց համարում առիթ ունեցանք վերջին վեցամսեակում կաթուղիկոսի մահից յետոյ, Էջմիածնում պատահած ընդդէմ օրինաւոր իշխանութեան շարժումների և ըմբոստական գործողութիւնների վրայից մասամբ յետ բանալ ծածկող քողը։ Մի բուռը չարամիտ մարդիկ, որոնք այս կամ այն ձևով կապուած էին շահերով Էջմիածնում օրինաւոր իշխանութեան դէմ մաքառողների հետ, և որոնք ամեն ջանք և ճիգ թափում էին ապօրինի ճանապարհներով ձեռք ձգել Բարձրագոյն Հոգևոր Իշխանութեան ղեկը, այժմս ի դերև ելած տեսնելով իրենց ջանքերն ու յոյսերը՝ ամեն տեսակ ստութեամբ և զրպարտութեամբ, հնարովի անհեթեթ լուրերով լցրին աշխարհը, աշխատելով մոլորեցնել ամբոխը և մասամբ նաև ինտելիգենտ դասակարգի այն մասը, որ մօտիկ ծանօթութիւն չունի Էջմիածնի գործերին և կարգերին։

Մեծ բարեբաղդութիւն էր, որ ռուսահայերիս մէջ պարբերական մամուլի լաւագոյն մասը, որը ոչ մի տեսակ նիւթական շահերով չէ կապուած հոգևորականութեան կամ Էջմիածնի և կամ այս կամ

*այն եպիսկոպոսի հետ, ինքնաբերաբար պաշտպան հանդիսացաւ օրինաւոր իշխանութեան և զօրեղ կերպով բանակռւեց մինչ անիշխանական գաղափարների դէմ, որոնց տակ մեծ մասամբ թագնուած էին անձնական հաշիւներ։ Պարզ երևեց, որ 1884-ի և 1885-ի ընտրութիւնների ժամանակ կատարուած խռովութիւնները զուր և անհետևանք չէին անցել և ծառայել էին իբրև մի ազդու և զգուշացնող դաս ամենքի համար։ Այդ յեղուած Բոլէց դէպը ու մարդիկն էին փոխուած, ու յետամնները և ուղղափառնէր հանելու համար գործ դրուած միջոցները։ Բոլորովին աններելի կը լինէր չօգտուել անցեալից և սխալուիլ մարդկանց և նրանց ձգտումները ճանաչելում։*

*Բայց միւս կողմից դժբաղդութիւնն այն է, որ մեր տաճկահայ եղբայրները չունին այն միջոցները բուն ճշմարտութեանը իրազեկ լինելու, ինչ որ ռուսահայերս։ Այնտեղ սուտ խօսքը աշխարհայ, որ ցերեկով է ման գալիս։ Զը նայելով մի քանի բարեմիտ թերթերի՝ մանաւանդ յատկապէս «Հայրենիք»-ի ջանքերին և հերքումներին, այնտեղ դեռ շրջապատութիւնն ու փաստերի յեղաշրջումը հասաւ եգիպտական բրգերի բարձրութեանը։ «Արևելք» օրաթերթը մի volte face-ով դրժելով իւր անցեալին և դաւանած գաղափարներին, հովանաւորուած մեծ նկրտում ունեցող մի բարձր պաշտօնեայից՝ դարձաւ այդ բոլոր սուտերին ժայթքող բերան։*

*Մենք չենք կարող այդ անասելի սուտերը մի առ մի արտատպել «Արարատ»-ում և հերքել, այդ կը լինէր «Արարատ»-ը դարձնել կեղտի մթերանոց։ Բաւական է մեզ մնում է մեր պարտքը կատարելու, ճշմարտութիւնը երևան հանելու, օրինական գաղափարներ քարոզելու համար միակ և ուղիղ միջոց՝ հրատարակել փաստերը, կատարուած իրողութիւնները, վաւերաթղթերով։*

*Ահա այդպիսի մի նշանաւոր վաւերաթուղթ է և Ներսիսեան Դպրանոցի Հոգաբարձութեան վերաբերեալ օրագրութիւնը։*

*Ըստ ինքեան պէտք էր որ՝ որ և է ուսումնարան կամ դպրանոց բոլորովին հեռու մնայ Տեղական կամ ընտրողական պայքարից. ուսումնարանների նպատակներից դուրս է այս կամ այն պաշտօնեայի կամ հաստատութեան իրաւասութեան սահմանները որոշելը։ Բայց տեսնում ենք այդ վաւերաթղթից, որ եր-*

կու հոգաբարձու և հոգաբարձութեան նախագահ մի թեմական Առաջնորդ թոյլ են տալիս իրենց յայտարարել, որ չեն ճանաչում Տեղակալ այն անձին, որին օրինական ճանապարհով Տեղակալ է ճանաչուած թէ Սինօդից, թէ Տէրութիւնից, թէ Ազգից՝ Պոլսի և Երուսաղէմի Պատրիարքներից։ Սինօդը չը նայելով իւր մի քանի անդամների ապօրինի ընթացքին, երբէք չը համարձակեց պարզ կերպով յարուցանել Տեղակալական հարց այն ձևով, ինչպէս այդ եղաւ պարբերական մամուլում և Ներսիսեան Դպրանոցի հոգաբարձութեան մէջ։ Եւ այդ շատ հասկանալի է։ Եթէ դուրսը կարող էին չը գիտնալ կամ յեղաշրջել ընդունուած սովորութիւնները և օրէնքները, այդ անկարելի էր Էջմիածնում, ուր գոնէ Սինօդականներին մատչելի են պաշտօնական թղթերն ու վաւերագրերը։ Անհերքելի փաստ էր, որ 1836-ից դէսը Սինօդի բոլոր նախագահները եղել են միանգամայն և կաթուղիկոսական Տեղակալ և հակադարձաբար՝ բոլոր կաթուղիկոսական Տեղակալները եղել են • Սինօդի նախագահ։ Սինօդի նախագահութիւնից այս կամ այն պատճառով դուրս եկողը դադարել է և կաթ. Տեղակալութիւնից, ինչպէս այդ պատահեց Մակար Արք-եպիսկոպոսին։ Վերջապէս բարձրագոյն մարմնաւոր իշխանութիւնից կաթուղիկոսական ընտրութիւնները սահմանող կանոնները պարզորոշ կերպով ասում են. «Նախագահ Սինօդի որ և Տեղակալ Պատրիարք-կաթուղիկոսի» (Намѣстникъ Патріарха-Католикоса)։ Այս մի տողով կարելի էր վերջ դնել Տեղակալական բանակռուին, բայց մամուլի մեծ մասին անծանօթ էին այս կանոնների գոյութիւնը, գիտցող մասն էլ իւր շահերի համար ծածկում էր, գիտութեամբ յեղաշրջելով փաստերը։ Իսկ պաշտօնական «Արարատ»-ը լռում էր, յայտնի է թէ ինչ ճանկերում էր գտնւում նա։

Մենք Տեղակալական խնդիրը նորից յարուցանելու մտադրութիւն չունինք, այլ այսքանն ենք ուզում ասել, որ պաշտօնական շրջաններում այդ խնդիրը տեղի չէր կարող ունենալ, քանի որ այնչափ պարզ էին թէ պաշտօնական կանոնների տրամադրութիւնը և թէ անցեալի պրակտիկան։ Եւ ահա մի բարձրաստիճան եկեղեցական, մի թեմական Առաջնորդ, մի եպիսկոպոս, որին նե-

րելի չէ անգիտանալ այն օրէնքներն ու կանոնները, որով պաշտօնապէս կառավարւում է եկեղեցին, յաւակնում է ըմբոստանալ իւր Մեծաւորի դէմ հետևելով երկու աշխարհական՝ կուսակցական նեղ հոգով տոգորուած անձնաւորութեանց։ Սինօդում ապօրինի ընթացքի մէջ գտնուող անդամները նոր նեցուկ են գտնում իրենց՝ Ներս. Դպրանոցի հոգաբարձութեան այս փոքրամասնութեան մէջ և ըմբոստութիւնը հասնում է այն աստիճանին, որ ապօրինի շրջաբերականով պատուիրւում է դպրոցներին չը հնազանդել Տեղակալի վերահսկողութեանը և կարևոր դէպքերում դիմել Սինօդին։ Մինչդեռ նոյն Սինօդը մի քանի տող վերևում պնդում է, որ դպրոցները վերապահուած են միմիայն կաթողիկոսի իրաւասութեանը։ Մենք չենք իջնում մանրամասնութեանց, մատնանիշ անելով այն բոլոր հակասութեանց վրայ, որ գտնւում են այդ՝ ծուռ ընթացքի մէջ գտնուող Սինօդականների ապօրինի օրագրութեան մէջ, ոչ էլ Ներս. Դպրանոցի հոգաբարձուներից մի քանիսի և Նախագահի ապօրինի և քմահաճ ընթացքի վրայ։ Մխիթարականն այն է, որ նոյն այդ հոգաբարձութեան մեծամասնութիւնը կանգնած է մնում իւր պաշտօնի բարձրութեան վրայ, բողոքելով իրենց մոլորուած կամ դիտութեամբ ուղիղ ճանապարհից շեղուած ընկերների բռնած ընթացքի դէմ։

Այժմ Սինօդը՝ նախագահութեամբ Տեղակալի և վերջինիս առաջադրութեամբ դատում է և դատապարտում՝ թէև չափազանց մեղմութեամբ և հայրաբար այդ երկու գլխաւոր՝ կարգից շեղուած հոգաբարձուներին և նրանց նախագահին, մի կողմ թողնելով սրանց երկրորդաբար հետևողներին, որոնց վրայ բարոյապէս տարածւում է նոյն դատապարտութիւնը։ Անշուշտ ամեն մարդ կը համաձայնի մեզ հետ, որ Բարձրագոյն Հոգ. Իշխանութեան դէմ կատարուած այդպիսի ծանր յանցանքի, աշխարայ ըմբոստութեան համար արդարութիւնը պահանջում էր, որ յանցաւորները իսպառ արձակուէին իրենց պաշտօններից, զրկուելով գոնէ մի քանի տարով ազգային—եկեղեցական որ և է գործի մասնակցելու իրաւունքից, բայց Ս. Սինօդը լաւ է համարել չափազանց մեղմութեամբ վարուիլ, երևի պատժի պակասորդը թողնելով պատժուողների

պատուարժանութեան և պարտականութեան մասին ունեցած ըմբռնողութեանը։

Առանց երկար կանգնելու այս տխուր էջերի վրայ, որոնք ապացոյց են մեր ազգային անզարգացման, գիտցիպլինայի ենթարկուելու անժուժկալութեան և տիրապետող եսական բուռն կրքերի, անցնենք մի կարևոր բացատրութեան, որի մասին անցեալ «Արարատ»-ում միայն մի թեթև ակնարկ էինք ձգել։

Սինօդի իրաւասութիւնները շատ որոշ են պօլօժենիայի սահմանադրութեամբ, նոյնպէս և կաթուղիկոսինը։ Ուսումնարանները յայտնի է որ բացառապէս վերաբերում են կաթուղիկոսի իրաւասութեանը, ուրեմն և կաթուղիկոս չեղած ժամանակ ուսումնարանների վերաբերեալ վարչական ընթացիկ գործերը կարգադրելը պատկանում է կաթ. Տեղակալի իրաւասութեան։ Այս իսկ հիման վրայ մեզ առարկում են՝ թէ ինչո՞ւ համար Ներսիսեան Դպրանոցի Հոգաբարձութեան վերաբերեալ գործը վերջնականապէս կարգադրւում է Սինօդով և ոչ թէ կաթուղ. Տեղակալի ձեռքով։ կարծես թէ Սինօդը մի տեսակ դատաւոր է հանդիսանում Տեղակալի և Հոգաբարձութեան վրայ ուսումնարանական գործում, որ իւր իրաւասութեան սահմաններից դուրս է։

Այդ առարկութիւնը ցրելու համար պէտք է գիտնալ հետևեալը։

կաթուղիկոսները բոլոր այն գործերում որ զուտ կրօնական չեն, բայց այսուամենայնիւ ամբողջապէս պատկանում են միմիայն հայրապետական իրաւասութեան՝—օրինակի համար Էջմիածնի վանքի կամ նրա ճեմարանի կառավարութիւնը,— սովորաբար իրենց կարգադրութիւններն արել են ոչ ուղղակի՝ այլ Սինօդի Ժողովով։ Այս դէպքում Սինօդը եղել է իբրև լոկ խորհրդատու և գործադիր մարմին։ Խօսինք օրինակներով։ Վանական կառավարութեան հարկաւոր են եղել ծախսարարներ, կամ ճեմարանի հանդերձեղինաց համար կապալառու, կամ Ագարակի համար տեսուչ, այս գործերը վանական ներքին կառավարութեան վերաբերեալ գործեր են, ուրեմն և միմիայն կաթուղիկոսի իրաւասութեան պատկանեալ, սակայն տիրող սովորութիւնն եղել է այն, որ այդ բոլորը կար-

գադրուել է կաթուղիկոսի գիտութեամբ Սինօդում։ Մինչդեռ պարզ է, որ Սինօդը օրէնքով այդ գործերում խառնուելիք չունի։ Ուրեմն և Սինօդի մասնակցութիւնը այդ տեսակ գործերում եղել է և կարող է լինել միմիայն կաթուղիկոսի բարեհաճութեամբ։ Եղել են այս տեսակի շատ գործեր, որ երբեմն կարգադրուել են Սինօդով և երբեմն առանց նրա մասնակցութեան։

Կաթուղիկոս չեղած ժամանակ նոյն տեսակի գործերը, որոնք միմիայն պատկանելիս են եղել կաթուղ. Տեղակալի իրաւասութեան՝ եթէ համերաշխութիւն է եղել Սինօդի և կաթ. Տեղակալի միջև, գրեթէ միշտ կարգադրուել են Սինօդով։ Հարկաւ այս դէպքում էլ Սինօդն եղել է լոկ խորհրդատու և գործադիր մարմին։ Եղել են և շատ օրինակներ որ նոյնանման գործեր, մանաւանդ վանքի ներքին կառավարութեան վերաբերեալ, երբեմն կարգադրուել են ուղղակի Տեղակալից և երբեմն Սինօդի միջոցով կաթ. Տեղակալի համաձայնութեամբ։ Այս բոլորից հետևում է այն կանոնը՝ որ կաթուղիկոսի և կաթուղիկոսական Տեղակալի իրաւասութեան վերապահեալ գործերը (դպրոցներ, Էջմիածնի վանքի կառավարութիւն, և այլն, և այլն) միմիայն այն դէպքում կարող են կարգադրուել Սինօդով, երբ այդ բարեհաճում են կաթուղիկոսը կամ նրա Տեղակալը։ Հակառակ այս վերջինների կամքի այդ տեսակ գործեր երբէք չեն կարող կատարուել Սինօդում, քանի որ սահմանեալ օրէնքներով դրանք դուրս են Սինօդի իրաւասութիւնից։

Մենք այստեղ չենք ուզում խօսել այն բանի մասին թէ արդեօք լաւ կամ վատ է այդ սովորութիւնը, որով կաթուղիկոսները կամ նրանց Տեղակալները իրենց իրաւասութեան վերապահեալ գրեթէ բոլոր առօրեայ գործերը կարգադրել են և կարգադրում են Սինօդով։ Մենք միայն արձանագրում ենք եղելութիւնը։

Այսպէս էլ Ներսիսեան Դպրանոցի ներկայ գործն է։ Նախ Տեղակալը իրեն դիմող բողոքարկուների բողոքի համաձայն արել է իւր կարգադրութիւնը ուղղակի և այդ իւր իրաւունքն էր։ Ապա երբ Սինօդը բարեփոխում՝ է այնպէս, որ ապօրինի ընթացք բռնած անդամներից երկուսը աքսորւում են ժամանակաւորապէս և միւսները բարձրագոյն յանդիմանութիւն են ստանում, այդ ժամանակ յար-

մարմին որ է տեսնում՝ հետևելով նախկին բազմաթիւ օրինակների՝ իւր իրաւասութեան ենթարկուած գործը առաջարկել և Սինոդին, օգտուելով նրա խորհրդից և գործի վճռի գործադրութիւնը յանձնելով նրան։ Այս էլ իւր իրաւունքն էր, որի դէմ բողոքելու ոչ ոք իրաւունք չունի։ Բայց այս չէ նշանակում բնաւ որ Սինոդը կամ՝ այս կամ այն հաստատութիւնը, և կամ որ և է Առաջնորդ իրաւունք ունի պահանջելու կաթուղիկոսից կամ կաթուղիկոսական Տեղակալից, որ վերջիններիս իրաւասութեան վերապահեալ գործերը անպատճառ կարգադրութին կամ լուծում ստանան Սինոդում։ Այդպիսի պահանջը անհիմն և ապօրինի պահանջ է։ Եւ ընթերցողը անպայման մեզ հետ կը համաձայնի, եթէ ծանօթ է Էջմիածնի գործավարութեանը և կամ եթէ մեզ յաջողուեց այս մի քանի տողով հասկանալի կացուցանել գործի էութիւնը։

Կաթուղիկոսը և Կաթուղիկոսական Տեղակալը լինելով միանգամայն և Սինոդի ատենապետ և ատենապետի տեղակալ, երբ գլխաւորին համերաշխ են գտնւում Սինոդի մեծամասնութեան հետ, եթէ կարելի է այսպէս ասել, գրեթէ ջնջւում են իրաւասութեան սահմանները, մանաւանդ առօրեայ ընթացիկ գործերում։ Իրաւասութեան սահմանները աւելի բացայայտ և որոշ են դառնում երբ լինում է անհամերաշխութիւն և տարաձայնութիւն։

Կաթուղիկոսի և Սինոդի մէջ այդպիսի անհամերաշխութեան դէպքեր հազուագիւտ են. թէև կան (օր. Մատթէոս կաթուղիկոսի ժամանակ)։ Տեղակալների և Սինոդի մէջ աւելի յաճախ։ Իսկ այժմեան տեղակալութեան օրով յայտնի է արդէն, որ այդ անհամերաշխութիւնը ոչ թէ լոկ անհամերաշխութիւն, այլ մի յանդուգն փորձ էր, հակառակ բոլոր օրէնքների և կարգերի, բռնաքարշել կաթ. Տեղակալի իրաւունքները և զոռով ձեռք ձգել հոգևոր Բարձրագոյն վարչութեան ղեկը։

—

Սրբազնագոյն Սինոդից հեռագրով պատուիրուեց Թիֆլիսի Գեր. Առաջնորդին բարեփոխել իւր հրահանգների 14-դ յօդուածը, որի մասին խօսեցանք վերևում։

—

Շնորհակալութեամբ ստացանք Պետերբուրգի համալսարանի ուսուցչապետ պ. Նիկողայոս Մառի «Изъ лѣтней поѣздки въ Арменію» յօդուածի վերջին մասը, արտատպութիւն «Записки восточн. отдѣл. Имп. Руск. Археолог. Общ.» պարբերական հրատարակութիւնից։ Երիտասարդ ուսուցչապետը այս յօդուածին կից հրատարակել է Ն ե ր ս է ս  Գ ր չ ի կամ ինչպէս ինքն է անուանում Ս ա ն ա հ ն ի խորենացու օրինակի (սեպհ. Սարգիս եպիսկոպոսի) բաղդատութիւնը տպագիր օրինակի (Թիֆ. հրատ.) հետ։ Յարգելի և անխոնջ ուսուցչապետը այդ բաղդատութիւնը կատարել է Էջմիածնում եղած ժամանակ մեր վանքի Միաբան բարեշնորհ Գալուստ Տ.-Մկրտչեանի հետ։ Այդ հետաքրքրական յօդուածի հայերէն թարգմանութիւնը անցեալ տարի սկսուել էր հրատարակուել «Հանդէս Ամսօրեայի» մէջ։

—

«Ինֆլուէնցա» հիւանդութիւնը իւր շնորհքը ցոյց է տալիս և Էջմիածնում։ Ճեմարանի ուսուցիչներից և աշակերտներից մօտ 50 հոգի հիւանդացած են, բարեբաղդաբար բոլորն էլ թեթև։ Ծանր հիւանդներ պատահեցան Միաբանութեան մէջ, թոքային բորբոքումով և ուրիշ բարդութիւններով, բայց շնորհիւ բժիշկ պ. Զարգարեանցի և աւելի ևս Տէր Տեղակալի հիւանդներին ցոյց տուած հոգածութեան, բոլորն էլ անվնաս մնացին մինչև այժմ։ Միակ մեծ կորուստը որ ունեցաւ Միաբանութիւնս, այդ Տէր Մկրտիչ Բաբամեանց Սրբազան Արք-եպիսկոպոսի մահն է։ Ծերունի՝ մօտ ութսունամեայ Սրբազանը չը կարողացաւ տանել հիւանդութեան ծանրութեանը և չը նայելով բժշկի բոլոր ջանքերին՝ կնքեց իւր մահկանացուն զրկելով Միաբանութիւնս իւր աւագագոյն և սիրուած մի անդամից։ (Տես Մահացուցակ)։

—

Օշականում երկարատև հիւանդութիւնից յետոյ վախճանուեց ամբողջ գաւառում լաւ յայտնի Տէր-Նսայի աւագ քահանայ Ամատունին 62 տարեկան հասակում։ Հանգուցեալը մեծ աշխատութիւն ունէր Ս. Մեսրոպի գամբարանի վրայ ժողովրդական հանգանակութեամբ կանգնեցրած եկեղեցու վերաշինութեան գործում։

# ՊԱՇՏՕՆԱԿԱՆՔ

## ՔԱՂՈՒԱԾՔ ՍԻՆՕԴԻ ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ։

2 Դեկ. *Ղարաբաղի կօնսիստորիայից նորից պահանջուեց* 400 *ռ. ի նպաստ Հաղարծին վանքի կալուածական ծախքերի։*

—

2 Դեկ. *Պատուիրուեց Հին-Նախիջևանի Հոգևոր կառավարութեանը պահանջել Թմբուլ գիւղի հանգուցեալ Անտոն աւագ քահանայ Տէր Ստեփաննոսեանցի կտակած* 80 *րուբ.*

—

2 Դեկ. *Աթոռի հիւրատան ամեն տեսակ գոյքերի անկորուստ պահպանութեան համար հարկ համարուեց ուղարկել Հիւրընկալ բարեշնորհ Ղևոնդ վարդապետին մի ժապաւինեալ մատեան պատուիրելով նորան՝ գործակցութեամբ բարեշնորհ Սահակ աբեղայ Ամատունուն ցուցակագրել մի առ մի հիւրատան բոլոր գոյքերը և պակասածների ցուցակը երկուսի ստորագրութեամբ մատուցանել Սինօդին։*

—

4 Դեկ. *Հրամայուեց ճեմարանի համար առնուած (սեպտ. հոկտ. և նոյեմբ.) դասական և ընթերցանելի* 311 *օրինակ գրքերի համար վճարել* 257 *ր.* 66 *կոպ.*

—

5 Դեկ. *Սինօդն օրագրութեամբ Տէր Տեղակալի բարեհաճ կամքին է թողնում Մայր Աթոռիս միաբան Տիգրան Բաղդասարեանի և Լևոն Խոջայեանցի ձեռնադրութեան գործը։*

—

5 Դեկ. *Ըստ Պոլոժենիայի* 48-*դ յօդուածի, Տէր Տեղակալը և սրբ. անդամները ժողովուելով Մայր Աթոռիս գանձարանը քննեցին ամեն տեսակ հաշիւները և ծախքի ու մտքի տոմարները, որոնցից երևեց. Արդեանց տոմարում առ* 1-*ն անցեալ նոյեմբերի մնացորդ* 49112 *րուբլի* 83 *կ. նոյն ամսուայ ընթացքում մուտք՝* 2925 *ր.* 80 *կ. ծախք՝* 8225 *ր. ուստի առ* 1-*ն դեկտեմբերի մնացորդ* 43813

*Շնորհակալութեամբ ստացանք Պետերբուրգի համալսարանի ուսուցչապետ պ. Նիկողայոս Մառի* «Изъ лѣтней поѣздки въ Арменію» *յօդուածի վերջին մասը, արտատպութիւն* «Записки восточн. отдѣл. Имп. Руск. Археолог. Общ.» *պարբերական հրատարակութիւնից։ Երիտասարդ ուսուցչապետը այս յօդուածին կից հրատարակել է Ն ե ր ս է ս  Գ ր չ ի կամ ինչպէս ինքն է անուանում Ս ա ն ա հ ն ի խորենացու օրինակի (սեպհ. Սարգիս եպիսկոպոսի) բաղդատութիւնը տպագիր օրինակի (Թիֆ. հրատ.) հետ։ Յարգելի և անխոնջ ուսուցչապետը այդ բաղդատութիւնը կատարել է Էջմիածնում եղած ժամանակ մեր վանքի Միաբան բարեշնորհ Գալուստ Տ.-Մկրտչեանի հետ։ Այդ հետաքրքրական յօդուածի հայերէն թարգմանութիւնը անցեալ տարի սկսուել էր հրատարակուել «Հանդէս Ամսօրեայի» մէջ։*

—

*«ինֆլուէնցա» հիւանդութիւնը իւր շնորհքը ցոյց է տալիս և Էջմիածնում։ Ճեմարանի ուսուցիչներից և աշակերտներից մօտ* 50 *հոգի հիւանդացած են, բարեբաղդաբար բոլորն էլ թեթև։ Ծանր հիւանդներ պատահեցան Միաբանութեան մէջ, թոքային բորբոքումով և ուրիշ բարդութիւններով, բայց շնորհիւ բժիշկ պ. Զարգարեանցի և աւելի ևս Տէր Տեղակալի հիւանդներին ցոյց տուած հոգածութեան, բոլորն էլ անվնաս մնացին մինչև այժմ։ Միակ մեծ կորուստը որ ունեցաւ Միաբանութիւնս, այդ Տէր Մկրտիչ Բաքամեանց Սրբազան Արք-եպիսկոպոսի մահն է։ Ծերունի՝ մօտ ութսունամեայ Սրբազանը չը կարողացաւ տանել հիւանդութեան ծանրութեանը և չը նայելով բժշկի բոլոր ջանքերին՝ կնքեց իւր մահկանացուն զրկելով Միաբանութիւնս իւր աւագագոյն և սիրուած մի անդամից։ (Տես Մահացուցակ)։*

—

*Օշականում երկարատև հիւանդութիւնից յետոյ վախճանուեց ամբողջ գաւառում լաւ յայտնի Տէր-Նսայի աւագ քահանայ Ամատունին* 62 *տարեկան հասակում։ Հանգուցեալը մեծ աշխատութիւն ունէր Ս. Մեսրոպի դամբարանի վրայ ժողովրդական հանգանակութեամբ կանգնեցրած եկեղեցու վերաշինութեան գործում։*

# ՊԱՇՏՕՆԱԿԱՆՔ

## ՔԱՂՈՒԱԾՔ ՍԻՆՕԴԻ ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ։

2 Դեկ. Ղարաբաղի կոնսիստորիայից նորից պահանջուեց 400 ռ. ի նպաստ Հաղարծին վանքի կալուածական ծախքերի։

—

2 Դեկ. Պատուիրուեց Հին-Նախիջևանի Հոգևոր կառավարութեանը պահանջել Թմբուլ գիւղի հանգուցեալ Անտոն աւագ քահանայ Տէր Ստեփանոսեանցի կտակած 80 րուբ.

—

2 Դեկ. Աթոռի հիւրատան ամեն տեսակ գոյքերի անկորուստ պահպանութեան համար հարկ համարուեց ուղարկել Հիւրընկալ քարեշնորհ Ղևոնդ վարդապետին մի ժապաւինեալ մատեան պատուիրելով նրան՝ գործակցութեամբ բարեշնորհ Սահակ աբեղայ Ամատունուն ցուցակագրել մի առ մի հիւրատան բոլոր գոյքերը և պակասածների ցուցակը երկուսի ստորագրութեամբ մատուցանել Սինօդին։

—

4 Դեկ. Հրամայուեց ճեմարանի համար առնուած (սեպտ. հոկտ. և նոյեմբ.) դասական և ընթերցանելի 311 օրինակ գրքերի համար վճարել 257 ր. 66 կոպ.

—

5 Դեկ. Սինօդն օրագրութեամբ Տէր Տեղակալի բարեհաճ կամքին է թողնում Մայր Աթոռիս միաբան Տիգրան Բաղդասարեանի և Լևոն խոջայեանցի ձեռնադրութեան գործը։

—

5 Դեկ. Ըստ Պոլոժենիայի 48-դ յօդուածի, Տէր Տեղակալը և սրբ. անդամները ժողովուելով Մայր Աթոռիս գանձարանը զննեցին ամեն տեսակ հաշիւները և ծախքի ու մտքի տոմարները, որոնցից երևեց. Արդեանց տոմարում առ 1-ն անցեալ նոյեմբերի մնացորդ 49112 րուբլի 83 կ. նոյն ամսուայ ընթացքում մուտք՝ 2925 ր. 80 կ. ծախք՝ 8225 ր. ուստի առ 1-ն դեկտեմբերի մնացորդ 43813

ր. 63 կ. որից երկու հազար չորս հարիւր երեսուն ութ րուբլի ութսուն եւ հինգ կոպէկ (2438 ր. 85 կ.) մնում են պահանջելի նախորդ գանձապահ Ներսէս եպիսկոպոսից։ Աւանդապահութեան տոմարում առ 1-ն անցեալ նոյեմբերի կար մնացորդ 28374 ր. 16 կ. նոյն ամսուայ ընթացքում մուտք՝ 1441 ր. 86 կ. ծախք չկայ։ Ուրեմն առ 1-ն դեկ. 29816 ր. 2 կ.

—

12. Դեկ. Կովկասեան կառավարչապետի գրութեան համաձայն շրջաբերականով յայտնուեց Թեմական Առաջնորդներին, որ իւրաքանչիւր գործակալ պահանջելով քահանաներից իւրաքանչիւր եկեղեցու տոմարներից 1871—1874 թուականներին ծնուած արուների քաղուածքը և վաւերացնելով այդ իրենց ստորագրութեամբ և կնքով հասուցանեն զինուորական ատեաններին, եթէ այդ նոյն բանը անձեռնահաս գտնուին կատարել թեմական ատեանները։ Այս կարգադրութեան մասին յայտնել ի գիտութիւն նորին բարձր գերազանցութեան պ. կառավարչապետին։

—

12 Դեկ. Գանձարանի աւանդապահական մասից ուղարկուեց Երուսաղէմ 607 ր. 92 կոպ. գանձանակագրամ։

—

12 Դեկ. Տրուեց Վանական կառավարութեան դեկտեմբերի ծախուց համար 10000 ր. որ անցեալ 11 ամիսների ծախսի հետ միասին անում է ընդ ամենը 106000 ր.

—

12 Դեկ. Երևանից Թեմական տեսչի միջնորդութիւնը յարգելով Սինոդն հրամայեց Երևանի կոնսիստորիային չհանել այլ ևս ուսուցիչների ռոճկից 3 տոկոս յօգուտ Թեմական Դպրանոցի և քահանաների որբոց և այրեաց գանձանակի։

—

12 Դեկ. Ամենապատիւ Տէր Տեղակալը առաջարկեց ի տնօրինութիւն Սինոդի Ներսիսեան Թեմական Դպրանոցի Հոգաբարձութեան հետ ունեցած իւր գրագրութիւնը, Գաբրիէլ Միրզոյեանց և Վար-

դան Սուլթանեանց ուսուցիչների խնդրի վերաբերութեամբ։ Սինօդը ուշադրութեան առնելով թէ այդ դրագրութիւնը և թէ իւր գործերի մէջ գտնուած գրութիւնները նոյն խնդրի վերաբերութեամբ գտաւ հետևեալը. Առաջին. Նորին Բարձր Սրբազնութիւնը անցեալ ուսումնական տարուայ վերջում ստանալով Ներսիսեան Դպրոցի պ. Տեսչի և ուսուցիչ պ. Սուլթանեանցի բողոքագրերը, որոնցից երևում էր որ Հոգաբարձութիւնը արձակել է ուսուցչութիւնից պ. Սուլթանեանցին և պ. Գ. Միրզոյեանցին, հեռագրով, յունիսի 14-ին, պահանջեց Հոգաբարձութիւնից ուղարկել իւրեն երկու ուսուցիչների արձակման համար կազմուած օրագիրը և սպասել իւր տնօրինութեանը։ Այս հեռագիրը կարդացւում է Հոգաբարձութեան ժողովքում յունիսի 15-ին և այնչափ զայրացնում է հոգաբարձուներից մի քանիսին, որ պ. Գէորգ Եւանգուլեանցը և իշխան Կոստանդին Բէհբուդեանցը թոյլ են տալիս իրենց ասելու նոյն իսկ ժողովքի մէջ և արձանագրել տալու օրագրում թէ չեն ճանաչում Երեմիա Սրբազան Եպիսկոպոսին Տեղակալ։ «պ. Եւանգուլեանը ասաց . . . ես նորան Տեղակալ չեմ «ճանաչում, և եթէ վճռուի ուղարկել արձանագրութիւնները, «պէտք է Ս. Սինօդին ուղարկել, որի հետ և միացաւ իշխան «Բէհբուդեանց»» — ահա յիշուած օրագրի խօսքերը։ Սակայն Հոգաբարձուների մեծամասնութիւնը հակառակ այդ մի քանիսի ճանաչելով Կաթուղիկոսական Տեղակալի իրաւասութիւնը, կատարեց Նրա օրինաւոր պահանջը։ Նորին Ամենապատուութիւնը իրեն մատուցուած օրագրից նկատելով, որ Հոգաբարձութիւնը արձակելով վերոյիշեալ ուսուցիչներին թէև իբրև հիմն իւր տնօրինութեան դնում է Հանգուցեալ Հայրապետի կոնդակը, սակայն միանգամայն հակառակ է վարւում նոյն կոնդակին, ուստի և յուլիսի 21-ին ընդ համարաւ 19, ուղղում է նոյն Հոգաբարձութեան հետևեալ առաջադրութիւնը. «ստանալով Ձեր յայտարարութիւնը (յուլիս 3, համար 539) և մայիսի 26-ին ու յունիսի 15-ին կայացած օրագրութիւնները հասու եղանք որ Հոգաբարձութիւնդ ռուսաց լեզուի ուսուցիչներ պ. պ. Վ. Սուլթանեանցին և Գ. Միրզոյեանցին արձակելու իւր որոշումը հիմնում է ի Տէր հան-

գուցեալ Սրբազնագոյն կաթողիկոսի կոնդակի վրայ (30 մայիս Թ. 211)։ Առաջին՝ կարդալով այդ կոնդակը չգտանք մենք առանձին պատուէր՝ ռուսաց լեզուի ուսուցիչների համար, այլ գտանք որ հրամայւում է արձակել Դպրոցից բոլոր ուսուցիչներին միանգամայն և ապա նորից ընտրել նրանցից նախ՝ այնպիսիներին, որոնք հմուտ են գիտութեանց մէջ և բարեբարոյ ու ջերմեռանդ կրօնում. երկրորդ՝ այնպիսիներին, որոնք աւարտել են իրենց ուսման ընթացքը բարձրագոյն ուսումնարաններում և Մայր Աթոռիս ճեմարանի մասնագիտական բաժնում, իսկ եթէ հարկ լինի ընտրել այնպիսիներին, որոնք չեն սովորել վերոյիշեալ ուսումնավայրերում, այդ դէպքում պատուիրում է առանձինն ի նկատի առնել ուսուցչի բազմամեայ փորձառութիւնը և քաջահմտութիւնը գիտութեանց և դասաւանդուած առարկաների մէջ։ Երրորդ իւրաքանչիւր ուսումնական տարուայ համար ուսուցիչներ ընտրելուց յետոյ՝ նրանց անուանական ցուցակը մատուցանել ի նկատողութիւն և ի վախճանական տնօրինութիւն Նորին Վեհափառութեան, ցոյց տալով իւրաքանչիւրի արժանիքը, դասերի և առարկաների թիւը և տարեկան ռոճիկների քանակութիւնը։

Երկրորդ. դպրոցիդ ներկայ ուսուցչական խմբում, ինչպէս յայտնի է, կան անձինք, որոնք ոչ համալսարանաւարտ են և ոչ ճեմարանաւարտ և այդպիսիներին թողնում է Հոգաբարձութիւնդ իրենց պաշտօնում իբրև բազմամեայ փորձառու ուսուցիչների, համաձայն կոնդակի երկրորդ պատուէրին։ Դրանց կարգում պէտք է որ լինին հարկաւ և պ. պ. Սուլթանեանցն ու Միրզոյեանցը։ Առաջինի համար վկայում է նրա տասներկու տարուայ անընդհատ ծառայութիւնը մի և նոյն պաշտօնում Հոգաբարձութեանդ տեսչութեան տակ և Տփխիսի մասնաւոր գիմնազիոնի տեսչի տուած վկայականը։ Պ. Գ. Միրզոյեանցի համար վկայում են նախ՝ դպրոցիդ պ. Տեսուչը իբրև անմիջական հսկող իւրաքանչիւրի պաշտօնակատարութեան, թէ իւր տեղեկագրում որ մատուցել է Հոգաբարձութեանդ անցեալ տարի և թէ իւր յայտարարութեան մէջ, այս տարուայ յունիսի 6-ին, որի մէջ ասուած է. «Արձա-

կուած ուսուցիչներից մէկը պ. Միրզոյեանն է, որի հեռացնելը ուսուցչական պաշտօնից ես գտնում եմ միանգամայն հակառակ տրամադրութեան կաթողիկոսական կոնդակի։ Գ. Միրզոյեանը... տարիներ շարունակ ռուսաց լեզուի դասեր աւանդելով նախ՝ տեղւոյս Արուեստագիտական դպրոցում և ապա Ներս. դպրոցի կրտսեր դասարաններում, եղել է միշտ բարեխիղճ, հմուտ և իւր գործը ուսումնասիրած օրինակելի ուսուցիչ... Երկրորդ՝ պ. Միրզոյեանցի համար վկայում են Տփխիսի Արուեստագիտ. դպրոցի վերատեսչի և ուրիշների տուած վկայականները. երրորդ՝ Հոգաբարձութեանդ անդամ պ. Նազար Ափեանցը և՝ բացի այս բոլորը, Հոգաբարձութեանդ օրագիրը, որի մէջ երկու յիշուած ուսուցիչներին արձակելու պատճառ դրւում է ոչ նրանց ապարդիւնաւորութիւնը և անփորձութիւնը իրենց աւանդած առարկաներում, այլ ուսուցչական իրաւունքի վկայական չունենալները։

Այս ամենը և սրանց նման օրինական հիմունքները,—որ զանց ենք առնում առաջ բերել,—ի նկատի առնելով պ. պ. Սուլթանեանցի և Միրզոյեանցի ուսուցչութիւնը գտնում ենք մենք Սրբազնագոյն կաթուղիկոսի կոնդակի պահանջներին, ոգուն և տրամադրութեանը ըստ ամենայնի համապատասխան. ուստի և ԱՌԱՋԱԴՐՈՒՄ ԵՆՔ թողնել այդ ուսուցիչներին իրենց պաշտօնում։ Իսկ Հոգաբարձութեանդ յայտարարութեան այն խօսքերին թէ՝ «Հոգաբարձութիւնս իրեն տրուած իրաւունքի համաձայն և Դպրոցի կանոնադրութեան 4, 5, 16 բաժ. 4 և 17 յօդ. հիման վրայ կազմակերպում է ուսուցչական խումբը ըստ իւրում նկատողութեան, ինչպէս և օգտակար համարէ դպրոցի յառաջադիմութեան համար և թէ կանոնադրութեան հաստատուելու օրից այս իրաւունքը վերապահուած է Հոգաբարձութեանս, ոչ Ս. Էջմիածնի Սինոդը և ոչ էլ Վեհափառ Հայրապետները միջամուխ են եղել ուսուցիչների ընտրութեան մէջ», այս խօսքերին իբրև պատասխան շատ ենք համարում ծանուցանել նախ՝ որ այլ է կանոնադրութեան և իրաւունքների անսխալ գործադրութեան վրայ հսկելը և այլ է միջամտութիւնը։ Երկրորդ՝ Հոգաբարձութիւնդ ուսուցիչներ ընտրելու և կարգելու գործում ինչ իրաւունքներ որ ունէր

վերոյիշեալ յօդուածների հիման վրայ, այդ խրատունքները այլ եւս նոյնը չեն վերեւում յիշուած Հայրապետական կոնդակի հրատարակուելու օրից։ Երբ նոր օրէնքներ են հաստատւում, հաստատւում են դրանք հինը խափանելու կամ բարեփոխելու համար։ Ի Տէր հանգուցեալ Սրբազնագոյն կաթուղիկոսի Հոգաբարձութեանց արձակած կոնդակը, ընդ համարաւ 211, բարեհաճել է սահմանափակել Ձեր կանոնագրութեան 4, 5, 16 եւ այլ յօդուածները, ուսուցիչների ընտրութիւնը առաջուայ նման թողնելով Ձեզ, իսկ վախճանական տնօրինութիւնը նրանց հաստատելու համար վերապահելով իրեն։ Վերադարձնում ենք սրա հետ Ձեր օրագիրը, որ ուղարկուած էր մեզ վերոյիշեալ յայտարարութեան հետ։ Իսկ տեսչի յայտարարութեան եւ երկու ուսուցիչների խնդրագրերի պատճէնը հարկ չենք համարում ուղարկել, որովհետեւ խնդիրն ինքնըստինքեան բացայայտ է եւ կարօտութիւն չունի Ձեր կողմից հերքման»։

Նորին Բարձր Սրբազնութեան Տեղակալի միւս հեռագրին, որ ուղղած էր նոյն Հոգաբարձութեանը յուլիսի 12-ին պահանջելով ուղարկել միւս օրագրերը, հերթական հոգաբարձու պ. Աֆեանցը նոյն ամսի 14-ին պատասխանում է թէ «վիճակաւոր առաջնորդը անկարելի է գտնում այդ պահանջը կատարելը առանց հոգաբարձական ժողովի, իսկ ժողով կը լինի օգոստոս ամսի վերջում։ Սակայն Տ. Տեղակալի վերոյիշեալ առաջադրութեան Թիֆլիս ժամանելուն պէս, օգոստոսի 3-ին, իսկոյն կայանում է հոգաբարձական ժողով ոչ թէ Նորին Բարձր Սրբազնութեան հեռագրական պահանջը կատարելու համար, այլ նրա առաջադրութիւնը՝ Միրզոյեանցին եւ Սուլթանեանցին իրենց պաշտօններում պահելու՝ մերժելու եւ նոր ուսուցիչներ հրաւիրելու համար։ Այս այսպէս անելուց յետոյ Հոգաբարձութիւնը օգոստոսի 15-ին յայտարարութեամբ (համար 59) դիմում է Սինօդը, խնդրելով, որ վերջինս իւր կարծիքն յայտնէ իւր Ատենապետի Տեղակալի արած կարգադրութեան մասին։ Սինօդը ստանալով այս յայտարարութիւնը, օրագիր է կազմում սեպտեմբերի 11-ին հակառակ օրինական կարգի եւ պատուէր է ուղարկում բոլոր թեմական Դպրոցների

Հոգաբարձուներին կառավարել իրենց յանձնուած դպրոցները Հայրապետներից սահմանուած կանոններով և Առաջնորդների Նախագահութեամբ առանց ինկատի առնելու, որ Սրբազան Տեղակալի առաջարկութիւնն էլ ուղղուած էր Ներսիսեան դպրոցի Հոգաբարձութեան յատկապէս Հանգուցեալ Հայրապետի կոնդակի ճիշտ պահպանութեան համար։ Սինօդի այդ օրագրի դէմ բողոքեց Պրոկուրորի պ. պաշտօնակատարը, սակայն Սինօդը երեք անդամների ստորագրութեամբ կազմեց հետևեալ օրագիրը. «20 սեպտեմբերի. լսեցին Պրոկուրորի պաշտօնակատար պ. Սիմէոն Փիլիպոսեանցի գրութիւնը Սինօդին, սեպտ. 14-ից համար 49, որի մէջ գրուած է. «Սրբազան Սինօդը օրագրական սահմանադրութեամբ այս սեպտեմբերի 11-ին հիմնուելով Ներսիսեան Հոգևոր Դպրոցի յայտարարութեան վրայ, որ վերաբերում է ռուսաց լեզուի հին ուսուցիչները արձակելուն և նորերը կարգելուն, պատուէր է տալիս Ռուսաստանի Հայոց Թեմական Դպրոցների Հոգաբարձուներին իրենց յանձնուած դպրոցները թէ ըստ ուսումնականին և թէ ըստ տնտեսականին կառավարել Հայրապետներից տրուած կանոններով Առաջնորդների կամ Թեմական կառավարիչների նախագահութեամբ, մինչև Նոր Հայրապետի գալուստը։ Եւ որովհետև այդ օրագիրը չէ ստորագրուած Սրբազան Տեղակալից և չը կայ Նրա գրաւոր դատողութիւնը, ուստի յայտնելով իմ անհամաձայնութիւնս վերադարձնում եմ Սինօդին»։ Այս լսելով Տէր (երեք) Անդամները զեկուցին. Նախ՝ որովհետև բարձրագոյն հաստատուած կանոնադրութեան 36 յօդուածի ա. հատուածի համաձայն Սինօդի անդամների մասին գանգատները մտնում են Սինօդը և ենթարկւում են դատողական գործողութեան և որովհետև Ներսիսեան դպրանոցի հոգաբարձութեան յայտարարութիւնը ըստ էութեան գանգատանք է Սինօդի Ատենապետի Տեղակալից, որ սա՝ Տեղակալը դուրս է եկել իւր իրաւասութեան սահմաններից իրաւանց չափազանցութեամբ (վասն ամբարձման իրաւանց իւրոց—превышеніе власти), միջամտելով միայն և եթ Վեհ. Հայրապետի տնօրինութեան վերապահուած խնդրում, ուստի և Նորին Սրբազնութեան ստորագրութիւնը ամսի 11-ին կայացած

օրագրութեան մէջ չը պէտք է լինի։ Եւ ինչպէս մակագրել է այդ օրագրութեան վրայ կարգապահ պ. Շամքորեանցը, այդ օրագիրը մատուցուել է Ատենապետի Տէր Տեղակալին, սակայն Նորին Գերապատուութիւնը չէ հաճել ստորագրել կամ տալ իւր կարծիքը։ Երկրորդ՝ Նոյն Բարձրագոյն կարգադրութեան (պոլոժենիայի) 40 յօդուածի համաձայն Սինօդս ներգործում է առհասարակ անդամների հաւասարազօր իրաւունքով, ժողովուած մի ատենում. սակայն Պատրիարք կաթուղիկոսն ունի վճռական ձայն ամեն զուտ հոգեւորական գործերում, իսկ ուրիշ գործերում Նորին Սրբութեան ձայնը իբրեւ Նախագահի ձայն, ձայների զուգահաւասար եղած ժամանակ առաւելութիւն է տալիս այն կողմին, որ կողմը որ հակւում է։ Ուստի եւ Պրոկուրօրի պաշտօնակատարի Սինօդական օրագրերում Տէր Տեղակալի ստորագրութեանը մեծ նշանակութիւն տալը, երբ արդէն ստորագրել են միւս անդամները, յայտնապէս նշանակում է ձայնատւութեան իրաւունքների եղծումն, որի սկզբունքների վրայ միայն հաստատուած է արդարութիւնը ըստ արդի ատենական գործողութեանց եւ այդ իրաւունքը Ատեանս ձեռք է բերել ՌՈՒՍԻՈՅ ՕԳՈՍՏԱՓԱՌ ԿԱՅՍԵՐՆԵՐԻ ողորմութեամբը, եւ բացարձակապէս նշանակում է դատողական գործողութեան հրաւիրել եզական անձնաւորութեան կամահաճութիւնը։ Երրորդ՝ Ռուսաստանի Հայոց բոլոր Թեմական եւ ծխական ուսումնարանները ունին կանոնադրութիւն եւ հոգաբարձութիւն Թեմակալ Առաջնորդների եւ ծխական քահանաների նախագահութեամբ, որոնց հաւատացուած է Հայաստանեայց եկեղեցու Բարձրագոյն Հոգեւոր Վարչութիւնից դպրոցական գործերի՝ թէ ըստ ուսումնական եւ թէ ըստ տնտեսական մասանց ղեկավարութիւնը եւ որովհետեւ քաղաքական իշխանութեան վերջին բացատրութեան համաձայն միմիայն Ամենայն Հայոց Ծայրագոյն Պատրիարք կաթուղիկոսն է միակ պատասխանատուն թէ պետութեան օրէնքների եւ թէ ազգի առաջ, ուստի եւ ոչ ոք արտօնութիւն չունի ձեռնամուխ լինելու վարժարանների հոգաբարձութեանց մէջ յարուցուած խնդիրներին, եթէ յատկապէս այդ բանի համար չէ կարգուած Սրբազնագոյն Քահանայապետից, մանաւանդ

որ պետական օրէնքներն էլ Հայոց եկեղեցու որդիների կրթութեան գործում ոչ ոքին պատասխանատու չեն ճանաչում, բայց միայն կաթուղիկոսին և նրանից կարգուած անձնաւորութեանը։ Աչքի առաջ ունենալով վերոյիշեալ հանգամանքները և Բարձրագոյն կարգադրութեան 10-դ և 35-դ յօդուածները, որոնց հիման վրայ Սինօդս ամեն բանում գործակցում է Սրբազնագոյն Պատրիարք կաթուղիկոսին, վերահսկում է հոգևոր առեանների բարեկարգութեանը, պաշտօնակալ անձերին, վանքերին, եկեղեցիներին, կղերիկոսական դպրոցներին, աստուածահաճոյ հաստատութիւններին և այլն, և այլն, որ վերջին օրերս պրոկուրորի պ. պաշտօնակատարը փոխանակ ճիշդ պահպանելու Գետութիւնից հաստատուած կանոնները, պատճառաբանութիւններ առաջ բերելով տեղի է տալիս Ատեանումս նորանոր տարաձայնութիւնների, ՀՐԱՄԱՅԵՑԻՆ. Սեպտեմբերի 11-ին Սինօդիս կայացրած օրագիրը, համաձայն Բարձրագոյն կարգադրութեան 40-գ յօդուածի բազմութեամբ ձայների անել ի կատար և այս օրագրի պատճէնը ուղարկել Պրոկուրորի պ. պաշտօնակատարին, աւելցնելով Թեմական Դպրանոցների Հոգաբարձութեանց գրուած հրամանագրերում, որ երբ իրենց կառավարութիւններից չը նախատեսուած խնդիրներ ծագին, թէ ուսումնական և թէ տնտեսական մասերի վերաբերեալ, այդպիսի խնդիրներին ընթացք տալ ձայների մեծամասնութեամբ, խոյս տալու համար ապագայում կողմնակի միջամտութիւններից, [illegible] Այս մասին տալ տեղեկութիւն Մայր Աթոռիս Ուսումնարանական Յանձնաժողովին [illegible] համար։

Նորին Բարձր Սրբազնութեան Սինօդին ներկայացրած թղթերից մէկն էլ է Ներսիս. դպրոցի Տեսչի և վեց Հոգաբարձուների բողոքը օգոստոսի 3-ին կազմուած օրագրի դէմ։ Այդ բողոքը ուղարկուած է Նորին Ամենապատուութեան և հետևեալ բովանդակութիւնն ունի. «Ներսիսեան Դպրոցի Հոգաբարձութիւնը՝ ստանալով Ամենապատուութեանդ հեռագիրը՝ յունիսի 15-ին արտաքոյ կարգի նիստ կազմեց և անպայման կերպով ճանաչելով Ձեր Տեղակալա-

կան իրաւասութիւնը Ներսիսեան Դպրոցի գործերի վերաբերմամբ՝ ձայների գերակշիռ առաւելութեամբ որոշեց. առաջել արձանագրութիւնները առ Ձեզ իբրև Տեղակալի, «թողնելով անկատար նոյն օրագրերի որոշմունքները ցնոր կարգադրութիւն»: Հետևեալ Հոգաբարձական նստին, որի արձանագրութիւնը անյայտ պատճառներով մինչև այժմ պատրաստ չէ, Հոգաբարձու պ. Յակոբ Տէր-Յովհաննիսեանը առաջարկեց քննել ժողովի վճիռը՝ այլ և այլ պատճառներով անվաւեր համարելով վերոյիշեալ նիստը, սակայն պ. Տէր-Յովհաննիսեանի առաջ բերած պատճառաբանութիւնը քննելով և անհիմն գտնելով, որոշուեց. նախընթաց յունիսի 15-ի նիստը միանգամայն կանոնաւոր համարել: Այնուհետև՝ Ձերդ Բարձր Սրբազնութիւնը, քննելով գործի էութիւնը, անբաւարար համարեցիք Հոգաբարձութեան բերած առարկութիւնները ռուսաց լեզուի ուսուցիչների արձակման նկատմամբ և բարեհաճեցիք հրամայել թողնել նրանց իրանց պաշտօններում: Հոգաբարձութիւնը ի նիստ գումարուելով օգոստոսի 3-ին, մասնակցութեամբ պ. պ. անդամների՝ Յակոբ Տէր-Յովհաննիսեանի, Աբգար Յովհաննիսեանի, Գ. Աքիմեանի, Կ. Բէհբութեանի, Ղ. Ափեանի և աւագ վերակացուի՝ Ամիրան Մանդինեանի, երբ Հոգաբարձուներից շատերս ամառնային արձակուրդի պատճառով հեռացած էինք Թիֆլիսից,—որոշում է. առանց հետևանքի թողնել Ամենապատւութեանդ հրամանը՝ ձայնակցելով Սրբազան Նախագահի կարծեաց (Մամբրէ եպիսկոպոս), և անմիջապէս հրաւիրել նոր ուսուցիչներ ռուսաց լեզու աւանդելու համար: Նախ՝ օգոստոսի 3-ի ժողովը ինքն ըստ ինքեան անկանոն է և նրա վճիռները անվաւեր, որովհետև ըստ Ներսիսեան դպրոցի կանոնադրութեան յօդ. Դ, ժողովը կանոնաւոր է եթէ Հոգաբարձութեան ներկայ գտնեալ անդամոց թիւը չէ պակաս քան զկէսն, իսկ այդ անգամ ներկայ են եղել անդամներից միմիայն հինգը (աւագ-վերակացու Ամիրան Մանդինեանը ըստ կանոնադրութեան չէ անդամ Հոգաբարձութեան), այն ինչ ըստ յօդ. 10 ամբողջ Հոգաբարձութիւնը կազմւում է տասն և երեք անդամներից՝ 12 ընտրուած և հաստատուած Հոգաբարձուներից և 13-րդը Վեհափառից հաստատած

տեսչից։ Երկրորդ՝ եթէ մի րոպէ անգամ ենթադրենք, որ օգոստոսի 3-ի նիստը կանոնաւոր էր, այնուամենայնիւ այդ նիստում կայացրած վճիռը Ձեր իրաւասութեան և արձակուած ուսուցիչների, ուրեմն և նոր ուսուցիչների նկատմամբ, անկանոն է և անվաւեր, որովհետև ոչ մի հաստատութեան մէջ ընդունուած չէ մի նիստում կայացրած վճիռը հետևեալ նիստում՝ առանց նոր հանգամանքների առաջանալը՝ քանդել և հաստատել հակառակը, այն էլ աւելի պակաս անդամների մասնակցութեամբ։ Երբ յաջորդ՝ օգոստոսի 28-ի նիստին, որին ներկայ էին տասը անդամ՝ պ. պ. Յակոբ Տէր-Յովհաննիսեան, Կ. Բէհրութեան, Գ. Աքիմեան, Գ. Եւանգուլեան, Ա. Մելիք-Ազարեան, Մ. Թամամշեան, բժ. Ս. Յովնանեան, Ղ. Աւիեան, Ն. Ալթաբէգեան, Հ. Սպենդիարեան, կարդացուեց օգոստոսի 3-ի նստի արձանագրութիւնը, մենք բընականաբար պէտք է անէինք վերոյիշեալ առարկութիւնները, սակայն որբազան նախագահը (Մամբրէ եպիսկոպոս) թոյլ չտուեց որ և իցէ հարց դնել նախընթաց նստի անկանոնութեան մասին, հրատարակելով այդ նիստը բոլորովին օրինաւոր և այնտեղ արծարծուած հարցերը արդէն պարզուած և վճռուած, յանդելով հարցերձ, որ ինքը չէ ծանուցում Ձեզ իբրեւ Տեղակալ, նաև Ձեր իրաւասութիւնը Ներսիսեան դպրոցի գործերի մէջ, այլ պատրաստ է ընդունել միայն սուրբ Էջմիածնի Սինոդի հրամանը։ Զատանալով սրբազան նախագահից իրաւունք խնդիրը քննելու և քուէարկելու,—որով ազատած կլինէինք հոգաբարձութիւնը հակասական ընթացքից,—մենք ներքոյ ստորագրեալներս, գտնելով անկանոն և անյաջորդական ուղղութիւնը միանգամայն վնասակար Ներսիսեան դպրոցի շահերի համար, պարտք ենք համարում ներկայ գրաւոր յայտարարութեամբ դիմել Ձերդ բարձր Սրբազնութեանը և յայտնել, որ մենք բնաւ չենք բաժանում մնացեալ անդամների հա՛յեցակէտը Ձեր իրաւանց մասին և լիապէս անհրաժեշտ ենք նկատում ի կատար ածել Ձեր կարգադրութիւնը»։ Հոգաբարձուք՝ Աղեքսանդր Մելիք-Ազարեանց, Միքայէլ Թամամշեանց, Ներսէս Ալթաբէգեանց, Ստեփանոս Անանեանց, Նազար Աւիեանց, Տեսուչ Յովհ. Սպենդերեանց և Ղաւալեանց։ Հոգաբարձու պ. Ղաւալեանցը

իւր ձայնը Սինոդի հեռագրով տուել է պ. Մելիք-Ազարեանցին Նիժնայից։

ՀՐԱՄԱՅԵՑԻՆ. Նախ՝ պատուիրել Ներսիսեան Թեմական դպրոցի հոգաբարձութեանը Ամենապատիւ Տէր Տեղակալի առաջադրութիւնը Միրզայեանց և Սուլթանեանց ուսուցիչների վերաբերութեամբ ի կատար ածել. եթէ հնարաւոր է տալով նրանց դաս հէնց այժմեանից, առանց արձակելու նոր հրաւիրուած ուսուցիչներին, որոնք արդէն մի քառամսեակ պարապել են, իսկ եթէ հնարաւորութիւն չկայ՝ վարձատրել նրանց ըստ պատշաճի։ Երկրորդ՝ որովհետև նոր հրաւիրուած ուսուցիչների վերաբերութեամբ հոգաբարձութիւնը չէ պահել Հայրապետական կոնդակի պատուէրը այն է՝ չէ առաջարկել նոր ուսուցիչների ընտրութիւնը ի հաստատութիւն կաթուղիկոսական Տեղակալի, ուստի այս ուսումնական տարում հրաւիրուած ուսուցիչներին ճանաչել իբրև առժամանակեայ պաշտօնակատար ուսուցչութեան մինչև ուսումնական տարուայ վերջը, իսկ եթէ այնուհետև հոգաբարձութիւնը կամենայ պահել նրանց պաշտօնում, պարտական է վարուել ճշտութեամբ Հայրապետական կոնդակի համաձայն։ Երրորդ՝ թէպէտ և արժան էր իշխան կոստանդին Բէհբուդեանցին և պ. Գէորգ Եւանգուլեանցին արձակել պաշտօնից, նրանց ըմբոստանալուն համար ընդդէմ Ամենապատիւ Տէր Տեղակալի իրաւանց, սակայն այս անգամ՝ յանդիմանել նրանց։ Իսկ Հոգաբարձութեան գերապատիւ Նախագահի նմանօրինակ ընթացքը ունենալ ի նկատի։ (Բոլոր վեց Սինոդական անդամների ստորագրութիւն)։

—

13 Դեկտ. Մայր Աթոռի տնտեսական կառավարութիւնը բարւոք դրութեան վերածելու և ամեն տեսակ ծախսերը ճշտելու համար հարկ դատուեց կարգել Սինոդի անդամներից մէկին վանական կառավարութեան նախագահ և միանգամայն բոլոր տնտեսական մասի ընդհանուր Տեսուչ, նոյնպէս և վերահսկող թէ վաղարշապատի և թէ սահմանակից գիւղերի կալուածների արդիւնքին, ուստի Հրամայեցին. Սինոդի անդամ գերապատիւ Գրիգորիս եպիսկոպոս Աղուանեանցին կարգել Նախագահ վանական կառավա-

րութեան և ընդհանուր Տեսուչ՝ Տպարանի, Ճեմարանի, Ագարակի, Մառանի, Հիւրատան և Ս. Աթոռի կալուածների և հրաւիրել Նորին Սրբազնութեանը մնալ գործել իւր պաշտօնը վարելու և տալ կարևոր հրահանգներ իւրաքանչիւր մասի պաշտօնեաներին իրենց պարտաւորութիւնները ճշտիւ կատարելու: Իսկ եթէ սովորականից դուրս մեծաքանակ ծախսեր հարկաւոր լինի անել նորոգութիւնների, շինութիւնների ևլն. համար, այդ դէպքերում հարկ է որ Նորին Գերապատուութիւնը դիմէ նախապէս Սինոդի խորհրդակցութեանն ու անօրինութեանը: Այս անօրինութիւնը ծանուցանել վանական կառավարութեան, Տպարանական ժողովին, Ճեմարանի վարչութեանը, Ագարակի վերատեսչին, Մառանապետին, Հիւրընկալին և Շտեմարանապետին, պատուէր տալով իւրաքանչիւրին առանց գիտութեան տնտեսական ընդհանուր վերատեսուչ և վանական կառավարութեան նախագահ Գեր. Գրիգորիս եպիսկոպոս Աղաւնեանցին անել և ոչինչ:

—

14 Դեկ. Սինոդում լսեցին Հին-Նախիջևանի եկեղեց. միդատեան երկսեռ դպրոցների Հոգաբարձութեան յայտարարութիւնը նոյեմ. 23-ից, որով բողոքում են տեղի փոխանորդ Արժ. Գրիգորիս վարդապետից—թէ նա թողնելով յաջորդարանը, որ գտնւում է Ս. Երրորդութեան եկեղեցու գաւթում՝ բնակւում է Ս. Գէորգ եկեղեցու գաւթի մէջ տղայոց դպրոցում, որ կառուցուած է Մահտեսի Մկրտիչ Թումեանցի ծախքով յատկապէս դպրոցի համար և որը լինելով օրիորդաց դպրոցին մօտ մեծ յարմարութիւն ունի և դիւրութիւն է տալիս Հոգաբարձութեանս մի ուսուցչական խմբով և մի ընդհանուր ծախքով պահպանել երկու դպրոցների գոյութիւնը: Այս մասին խնդրում են Սինոդի անօրէնութիւնը, որպէս զի փոխանորդը վերադառնայ յաջորդարանը և դպրոցի շինութիւնը յանձնուի Հոգաբարձութեան, այնտեղ աշակերտներ զետեղելու համար: Այլ և յարակցում են թէ Գրիգորիս վարդապետի Նախիջևան ժամանելուց յետոյ՝ եկամտի մի աղբիւր, որ շնորհիւ նախկին փոխանորդների բերում էր յօգուտ դպրոցներին մինչև 300 ր. արդիւնք, այժմ նուազել է և հասել է 20 ր.

80 կոպ։ Հ ր ա մ ա յ ե ց ի ն. պատուիրել փոխանորդ Գրիգորիս վարդապետին անյապաղ փոխադրուիլ յաջորդարանը և դպրոցը՝ որի մէջ բնակւում է, յանձնել Հոգաբարձութեան։ Այս մասին յայտնելով հոգաբարձութեանը պատուիրել նրան բացադրել Սինոդիս թէ այն ինչ աղբիւր է, որ բերում էր մինչև 300 ր. արդիւնք դպրոցներին և այժմ նուազել է։

—

14 Դեկա. Վրաստանի կոնսիստորիան յայտնում է Սինոդին յայտարարութեամբ (13 սեպտ. Հ. 3296) որ Ախանայ գիւղի Սիմէոն քահանայ Մարգարեանցը 1870 թուի չափաբերական մատեանից քաղուածքում՝ ցոյց է տուել Յովհաննէս Գրիգորեան Մարգարեանցին ծնուած, իսկ դիմացի խորանում նոյն անձին նշանակել է վախճանած, առանց թուականի։ Սակայն քննութիւնից դուրս է գալիս որ Յովհաննէսը կենդանի է և մկրտութիւնից յետոյ նրա անունը փոխուել է Ստեփանոս, ուստի և Զինուորական Ատեանը ուղարկելով իւր արձանագրութեան պատճէնը, քրէական դատավարութեան 1020 և 1085 յօդուածի համաձայն ծանուցանում է կոնսիստորիային Սիմէոն քահանայի ապօրինի գործողութիւնը խնդրելով անօրինել արժանը և արդիւնքը յայտնել իրեն։ Սրանից յետոյ կոնսիստորիան քննութիւն է անում Ախալքալակի բարեկարգչի ձեռքով, որից երևում է որ ծնողները վկայում են թէ Յովհաննէսը վախճանուած է։ Բայց զինուորական Ատենի առաջ նոյն ծնողները խոստովանում են՝ թէ Յովհաննէսը չէ վախճանուած, այլ նա ինքն Ստեփանոսն է և անունը փոխուել է ընտանիքում՝, վաղեմի սովորութեան համեմատ։ Տէր Սիմէոնն էլ խոստովանում է, թէ ինքը դիւրահաւան գտնուելով՝ շատերի վկայութեան համաձայն, արել է մահուան արձանագրութիւնը (չափաբերականում), բայց ոչ խարդախութեան նպատակով, որովհետև վերոյիշեալ Յովհաննէսը բնականաբար արատաւոր լինելով՝ չէ կարող ընդունուել զինուորական ծառայութեան, ուստի և կարիք չկայ նրան թագցնելու։ Այս բոլորից յետոյ կոնսիստորիան Սիմէոն քահանային գտնում է յանցաւոր։

Սինոդը օրագրով անցեալ հոկտ. 4-ին վճռեց Սիմէոն քահանային

խարդախ գործողութեան համար ենթարկել միամեայ եկեղեցական ապաշխարանքի, բայց Սինօդի պ. Պրոկուրորը անհամաձայն գտնուելով այդ օրագրին վերադարձրեց այն իւր գրութեամբ ամսիս 7-ին (Թ. 55) ազդարարելով որ Սիմէոն քահանայի յանցաւորութիւնը նախատեսուած է պատժական օրէնքի 362 և 1441 յօդուածներով, և պէտք է այդ գործը յանձնել տեղական քննչին քննութեան համար։ Սինօդը աչքի առաջ ունենալով օրէնքի այդ յօդուածները՝ գտնում է, արդարև որ Ալանայ գիւղի Սիմէոն քահանայ Մարգարեանցը, որ մեղադրւում է, որպէս սուտ տեղեկութիւն տուող Յովհաննէս Մարգարեանցի մահուան մասին, ենթարկւում է աշխարհական և ոչ հոգևոր դատաստանի, ուստի Հրամայեցին. դարձուցանելով գործը պատուիրել Թիֆլիսի կոնսիստորիային այս գործի հանգամանքները ծանուցանել տեղական քննչին, գործին օրէնսդրական կարգով ընթացք տալու համար։ Եւ այս տնօրինութիւնը յայտնել Սինօդի պ. Պրոկուրորին ի տեղեկութիւն։

—

20 Դեկ. Նոր—Բայազիտ գաւառի գաւառապետի գրութիւնից երևում է, որ Բջնի գիւղի $545\frac{1}{2}$ օրավար աղչայ հողի և $1562\frac{3}{4}$ կալուածատերական հողի համար Մայր-Աթոռս իբրև սեպհականատէր պարտական է վճարել հարկ ներկայ տարուայ համար 64 ր. 68 կոպ. նաև ապառիկ 225 ր. 4 կ. ուստի հրամայուեց վանական կառավարութեանը այդ գումարը ներկայացնել Երևանի արքունի գանձարանը և ընկալագիրը ուղարկել վերոյիշեալ գաւառապետին։

—

20 Դեկտ. Սինօդն ստացաւ Դարբանդի Հաշտարար Դատաւորից 691 ր. 86 կոպ. Կ. Պոլսի Միացեալ Ընկերութեանն հասանելի։

—

20 Դեկտ. Հրամայուեց տալ արքունի հարկ Գեղարդայ վանքի կալուածների համար (գիւղեր՝ Մեհրաբլու, Մեհրաբ—Քիւրդքենդ և Մեհրաբ—Թափաբաշ) 22 ր. 17 կ. այլ և նոյնչափ ապառիկ և 6 րուբ. տուգանք ընդամենն 51 ր. 3 կ.

—

20 *Դեկտ. Նոր—Նախիջեւանի Ս. Խաչ վանքի Նախկին վանահայր բարեշնորհ Եփրեմ աբեղայի միջնորդութեան համաձայն կարգւում է նոյն վանքին միաբան այրի դպիր Ղազարոս Տէր Ստեփաննոսեան Բարդախչեանցը՝ Զալթը գիւղից։*

—

23 *Դեկտ. Ս. Էջմիածնի Տաճարի մոմավաճառութեան կապալառուն վճարեց իւր ապառիկը՝ իւր գրաւականով։*

—

23 *Դեկտ. Մերժուեցան Երեւանի բնակիչ ատոփճանաւոր Արշակ Տէր Մարուքեանցի կրկնակի խնդիրները, որով ցանկանում էր ընդունուել իբրեւ կուսակրօն հոգեւորական Մայր-Աթոռիս Միաբանների շարքը։*

—

23 *Դեկտ. Հրամայեցին. Սուրմալուայ Գործակալի ձեռքով յանդիմանութիւն յայտնել Իգդիր գիւղի Ստեփանոս աւագ-քահանայ Տէր Թումասեանին, որ վստահացել է առանց հոգեւոր իշխանութեան թոյլտուութեան մեկնիլ իւր քահանայագործութեան տեղից գնալով Թիֆլիս։ Այլ և պահանջել նրանից ստորագրութիւն որ այսուհետեւ առանց իւր իշխանութեան թոյլտուութեան չհամարձակի հեռանալ քահանայագործութեան տեղից և այդ ստորագրութիւնը մատուցանել Սինօդիս։*

—

30 *և* 31 *Դեկտ. Հինգ առանձին օրագրերով հրամայուեց Մայր—Աթոռի գանձապահին ժապաւինեալ աւանդապահութեան սնտուկից հանել և ուղարկել ըստ պատկանելոյն հետեւեալ գումարները. 1. երկու րուբլի* (2) *գանձանակ Մշի Ս. Կարապետ վանքին,* 2) *քսան և ութ րուբլի* (28 *ր.*) *յօգուտ սովելոց Տաճկահայաստանի՝ Միացեալ ընկերութեան,* 3) *ութ հարիւր յիսուն և եօթն ր.* 43 *կ.* (857 *ր.* 43 *կ.*) *կտակուած հանգուցեալ իշխան Ղահրաման Արղութեանից յօգուտ Վարագ և Նարեկ վանքերի,* 4) *Բագու քաղաքում ժողովուած յօգուտ հրկիզելոց Զէյթունի* 532 *ր.* 98 *կ. և* 5) 21 *ր.* 41. *կ. յօգուտ շինութեան Ուրմի քաղաքի եկեղեցու։ Առաջին չորս գումարը կուղարկուին Պոլսի Պատրիարքի անունով, վեր-*

ջինը՝ Ուրմի քաղաքինը՝ Ատրպատականի Առաջնորդի անունով։

—

30 Դեկտ. Տրուեց Արժ. Մինաս վարդապետ Պարոն-Վարդանեանցին իւր ծառայութեան ցուցակի վաւերացեալ պատճէն։

—

30 Դեկտ. Խնդրի համաձայն տրուեց Վաղարշապատի բնակիչ Սարգիս Աւոյեանին իւր հինգ ամսոր և երկու ու կէս լոռանոց սպ գու համար վկայագիր։

—

30 Դեկտ. Հրամայուեց կոնսիստորիաներին և հոգևոր կառավարութիւններին մինչև մարտ հասցնել Տպարանական ժողովից ուղարկուած 1892-թուի օրացոյցների գինը։

—

31 Դեկտ. Քահանայութեան ձեռնադրութեան հրաման տրուեց Ախալցխացի վարդան Սառաֆեանցին՝ Քիւրակդարայ գիւղի ծխական դպրոցի ուսուցչին, համաձայն միջնորդութեան Երևանի կոնսիստորիայի։ Քահանայացուն ձեռնադրուելու է կարս նահանգի Օլթի քաղաքի վրայ, ուր կայ 90 տուն հայ առանց քահանայի։

—

31 Դեկտ. Ցարգուեց Մարազգի (քուրդ) Խաօ Աղօ-օղլու խընդրագիրը, որով ցանկանում է մտնել Հայաստանեայց Եկեղեցու ծոցը։ Այս մասին խնդրուեց կառավարչապետի անօրինութիւնը։

—

31 Դեկտ. Տրուեց 100 րուբլի ճանապարհածախս Երևանի թեմի կալուածների հաւատարմատար պ. Տ. Նաւասարդեանին Թիֆլիսի Պալատում Տայլարի հողերի (կարսի նահ.) կալալագնի պահանջը պ. Սամիսոն Բաբաջանեանից՝ պաշտպանելու համար (2801 ր. տոկոսով և 270 ր. դատավարութեան ծախք)։

—

## ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

*Տէր Տեղակալի ուղարկած հեռագիրը*

ՊԵՏԵՐԲՈՒՐԳ, ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ Պ. ՆԱԽԱՐԱՐԻՆ։

*Յարգոյաբար խնդրում եմ Ձերդ Բարձր Գերազանցութիւնից սփռել յոտս գահոյից* ՆՈՐԻՆ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՄԵԾՈՒԹԵԱՆՑ *ամենահպատակօրէն զգացմունքները հայ հոգևորականութեան, որ* ԹԱԳՈՒՀԻ ԿԱՅՍԵՐՈՒՀՈՒ *ծննդեան այս հանդիսաւոր օրում ջերմեռանդութեամբ աղօթում է* ՕԳՈՍՏՈՍԱՓԱՌ ՏԱՆ *բաղդաւորութեան և կեանքի երկարատևութեան համար, ի բարօրութիւն Ռուսիոյ։*

14 *Նոյեմ.* 1891.

*Կովկասեան կառավարչապետի գրութիւնը Տէր Տեղակալին,* 23 *դեկ.* 1891 *ամի.* № 11965.

*Ներքին Գործերի Նախարարը ծանոյց ինձ, որ* ԹԱԳԱՒՈՐ ԿԱՅՍՐԸ *լսելով այն հեռագրի ամենահպատակօրէն զեկուցումը, որով արտայայտում է Հայ Հոգևորականութեան հաւատարիմ հպատակութեան զգացմունքները* ԹԱԳՈՒՀԻ ԿԱՅՍԵՐՈՒՀՈՒ *ծննդեան մեծափառ աւուր առթիւ, ամենաողորմածաբար հրամայել բարեհաճեց՝ շնորհակալութիւն յայտնել Հայ Հոգևորականութեանը։*

ԲԱՐՁՐԱԳՈՅՆ *այս կամքը պատիւ ունիմ հաղորդել Ձեր Ամենապատուութեանը, որ յայտնեք ում անկն է։*

*Գեներալ Ադիւտանտ՝* ՇԵՐԵՄԵՏԵՒ։

*Պաշտօնակատար վերատես.*
*դիւանատան* ՇԱՏԻԼՈՎ։



## ՄԱՀԱՑՈՒՑԱԿ

# ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ

## ՄԿՐՏԻՉ ԱՐՔ-ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱԲԱՄԵԱՆՑ

### ՅՈՒՆՈՒԱՐԻ 23-ԻՆ ԵՒ ԹԱՂՈՒԵՑ ՅՈՒՆ. 26-ԻՆ։

*Հանգուցեալը աշխարհական ծնողների որդի էր, ծնուած Երևանում։ Իւր ուսումն և դաստիարակութիւնն ստացաւ Էջմիածնի ժառանգաւորաց դպրոցում։ 1837-ին մտաւ հոգևոր կոչման մէջ և ուրարակիր էր։ 1838-ին ձեռնադրուեց աւագ-սարկաւագ, 1842-ին ստացաւ աբեղայութիւն։ 1846—1848 կարգուած էր վանական տպարանի կառավարիչ։ 1848-ին Սինօդի կարգադրութեամբ ուղարկուեց Երևան իբրև Նախանդամ և գանձապահ կոնսիստորիայի և այդ պաշտօնում մնաց մինչև 1857 թ. 1859-ին Մատթէոս կաթուղիկոսից պարգևատրւում է վարդապետական խաչով և ծաղկեայ փիլոնով։ Նոյն կաթողիկոսի առաջարկութեամբ վարձատրւում է Թուրքաց Սուլթանից Մէճիտիէ 3-դ աստիճանի շքանշանով։ 1849-ին նշանակւում է քննիչ Ալեքսանդրապոլի յաջորդութեան։ 1858-ին, ի թիւս ուրիշների գնում է հրաւիրակ Կ. Պոլիս, Մատթէոս կաթուղիկոսին ուղեկցելու։ Նոյն թուին նշանակւում է յաջորդ Դզլարում։ 1860-ին նշանակւում է Էջմիածնում Հիւրընկալ։ 1861-ին Մատթէոս կաթուղիկոսից ձեռնադրւում է եպիսկոպոս և նոյն թուին նշանակւում է յաջորդ Հին-Նախիջևանի։ 1863-ին նոյն պաշտօնով տեղափոխւում է Ալեքսանդրապոլ։ 1864-ին ստանում է Արք-եպիսկոպոսութիւն, սոյն այս թուին նշանակւում է*

կառավարիչ Ղարաբաղի թեմի։ 1866-ին միևնոյն պաշտօնով փոխադրւում է Երևանի թեմը։ 1868-ին Գէորգ կաթուղիկոսից ուղարկւում է Ախալցխայ իբրև յաջորդ։ 1871-ին նորից փոխադրւում է Երևան իբրև կառավարիչ այն թեմի։ 1873-ին միևնոյն կաթուղիկոսի առաջարկութեամբ և բարձրագոյն հաճութեամբ հաստատւում է Էջմիածնի Սինօդի անդամ։ Գէորգ կաթուղիկոսի մահից յետոյ երեք անգամ Տեղակալութեան ծանր պաշտօնն է վարում։ Տեղակալութեան օրագրերի թուականներն են 6 դեկտ. 1882, 14 ապրիլի 1883 և 11 յունիսի 1884։ Հանգուցեալի հետ մէջ ընդ մէջ Տեղակալութիւն արաւ Մակար Արքեպիսկոպոսը (յետոյ կաթուղիկոս)։ Ռուսաց շքանշաններից ունէր Աննա (բ. աստիճանի), ստացած 1876-ին և Ստանիսլաւ (ա. աստիճանի), ստացած 1886-ին։

Այս երկարատև ծառայութեան ընթացքում ոչ մի տուգանքի, յանդիմանութեան կամ պատժի և կամ դատի չէ ենթարկուել հանգուցեալը։ Հանգուցեալի պաշտօնավարութեան ամենափայլուն և միանգամայն պատասխանատուութեամբ ծանր ժամանակն է եղել երկարատև և երեք անգամ միմեանց յաջորդող Տեղակալութիւնը Գէորգ կաթուղիկոսի մահից յետոյ։ Գահի երկու տարուց աւելի թափուր մնացած ժամանակ ծանր խնդիրներ յուզուեցան և Հանգուցեալը միշտ մնաց հաւատարիմ իւր պարտքին և պաշտօնին (տես «Արարատ» 1883—1885)։ Այդ տարիների կըրկնակի ընտրութեանց ժամանակ՝ Հանգուցեալը իւր քուէն տուեց Ներսէս Վարժապետեան և Խրիմեան Սրբազաններին։ Տ. Տ. Մակար կաթուղիկոսի հաստատուելուց յետոյ, Հանգուցեալը յետ քաշուելով բոլոր պաշտօններից, վարում էր խաղաղ և անվրդով կեանք։ «Ինֆլուէնցա» հիւանդութիւնը անակնկալ կերպով վերջ դրեց նրա օրերին, որ մօտաւորապէս 75 տարիների էին հաւասարւում։ Պատշաճաւոր հանդիսով և յուղարկաւորութեամբ Հանգուցեալի մարմինը ամփոփուեց Միաբանութեանս գերեզմանոցում։

ՏԷ՛Ր ՀԱՆԳՈՒՍՑԷ՛ ԶՆԱ Ի ԼՈՅՍ ԵՐԵՍԱՑ ԻՒՐՈՑ։

# „ՄՈՒՐՃ"

(ՉՈՐՐՈՐԴ ՏԱՐԻ)

**ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ**

**ԱՄՍԱԳԻՐ**

*«Մուրճ» ամսագիրը կը հրատարակուի 1892 թուականին նոյն ծրագրով, ինչպէս և նախկին տարիներում։*

Տարեկան բաժանորդագինն է 10 ռուբլի։

*Խմբագիր-Հրատարակիչ* Ա. ԱՐԱՍԽԱՆԵԱՆՑ.

*Հասցէն.* Тифлисъ. Въ редакцію журнала «Мурчъ».

---

# ՓՈՒՆՋ

**ՇԱԲԱԹԱԹԵՐԹ**

*Հրատարակւում է շաբաթ օրերը։ Տարեկան բաժանորդագինն է երկու և կէս արծաթ մէճիտ։*

Տնօրէն և տէր՝ Հ. Մ. ԱԼԱՃԱՃԵԱՆ։

*Հասցէն.* Directeur du journal Arménien Pountch 16 Naflié-Han, Balouk-pazar Constantinople.

---

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

**Բարոյական-Ուսումնական-Արուեստագիտական**

**ԱՄՍԱԹԵՐԹ**

*Հրատարակւում է նոյն դիրքով և նոյն ծրագրով*

*Տարեկան բաժանորդագինը Ռուսաստանի համար 4 ռ. արտասահմանի՝ 10 ֆրանկ.*

*Խմբագրւում և հրատարակւում է Վիեննայի Մխիթարեան Հայրերի ձեռքով։*

*Հասցէն.* A la Redaction de la Revue „Handes" Au couvent des RR. Pp. Méchitharistes, Vienne (Autriche) VII Mechitaristengasse 4.

---

1892 *թ. յունուարից լոյս է տեսել Մոսկվայում*

Գ. ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆԻ ՏՊԱՐԱՆԻՑ

# ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆՆ Է ԵՐԿՈՒ ՀԱՏՈՐԻՆ ՄԻԱՍԻՆ 2 Ռ.

*Իսկ իւրաքանչիւր հատորի գինն է* 1 *ռ.* 50 *կոպէկ։*



ՀԱՆՆԷՍ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆՑ.

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Մամուլի տակից դուրս են եկել հետևեալ գրքերը·

ԱՒԵՏԱՐԱՆ փոքրադիր, գրաբառ, փառակազմ գինն է 70 կոպ.: ՕՐԱՑՈՅՑ 1892 թ., գինն է 20 կոպ.: Ցանկացողները կարող են գնել Վիճակային կոնսիստորիայներին: Աւետարանի համար կարող են դիմել նաև Տպ. ժողովին:

---

Նոյն և Տպարանական ժողովս սորանով յայտնում է ի գիտութիւն Ուսումնարանական և այլ հաստատութեանց վարչութիւններին. թէ կատարում է ամենայն մաքրութեամբ և արագութեամբ զանազան պատուէրներ պաշտօնական թղթերի և բլանկների վերաբերութեամբ:

Ժողովիս հետ գործ ունեցողները կարող են դիմել հետևեալ հասցէով· Въ Эчміадзинскій типографическій комитетъ, Вагаршапатъ

---

## ԾԱՆՈՒՑՈՒՄՆ

Արարատի խմբագրութիւնը խնդրում է այն գործակալներից՝ որոնք տակաւին չեն ուղարկել յառաջիկայ 1892 թ. բաժանորդաց ցուցակը, շուտով ուղարկել Տպար. ժողովին. հակառակ դէպքում՝ կենթարկուին պատասխանատուութեան: